...ԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԿԸ.

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ...ԷՆ ՆՇԱՆԱԳՐԵՐՈՒ
## ԵՒ ՎԱՐՈՒՑ Ս. ՄԱՇԹՈՑԻ

ԳՐԵՑ

**ՊՐՈՖ. ԴԿՏ. Յ. ՄԱՐԿՈՒԱՐՏ**

ԳԵՐՄԱՆԵՐԷՆԷ ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. Ա. ՎԱՐԴԱՆԵԱՆ
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1913.

ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐ ՀԱՅ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ
ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

Ա.

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅԵՐԷՆ ՆՇԱՆԱԳՐԵՐՈՒ ԵՒ ՎԱՐՈՒՑ Ս. ՄԱՇԹՈՑԻ

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԿԷ.

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՀԱՅԵՐԷՆ ՆՇԱՆԱԳՐԵՐՈՒ

## ԵՒ ՎԱՐՈՒՑ Ս. ՄԱՇԹՈՑԻ




ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1913.

Patmut'iun hayeren nshanagreru w varuts' S. Masht'ots'i

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՀԱՅԵՐԷՆ ՆՇԱՆԱԳՐԵՐՈՒ

## ԵՒ ՎԱՐՈՒՑ Ս. ՄԱՇԹՈՑԻ


ԳՐԵՑ

ՊՐՈՖ. ԴԿՏ. Յ. ՄԱՐԿՈՒԱՐՏ

ԳԵՐՄԱՆԵՐԷՆԷ ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. Ա. ՎԱՐԴԱՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ





ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1913.

# ԱԶԴ

Հայ գրի գիւտին նուիրուած ազգային թէ օտար բազմաթիւ ուսումնասիրութիւններուն կու գայ յարիլ առաջիկայ հատորիկս ալ, ուր համեմատական պատմաքննութեամբ սուղ էջերու մէջ կը լուսաբանուին Մաշթոցի կենսագրութիւնը, յարակից պարագաները եւ Մաշթոցի հնարած հայ գրերու յառաջագայութեան տեղիքները: Թէ այս ուսումնասիրութեամբ վերջնականապէս կը լուծուի հայ գրերու ծագման առեղծուածը, չենք գիտեր, բայց կը խոստովանինք թէ ցայժմ հրատարակուած համանիւթ ուսումնասիրութիւններէն գերազանցապէս բարձր է հայերէնագէտ Մարկուարտի ներկայ աշխատասիրութիւնը: Ինչպէս յառաջաբանին մէջ շեշտել կը թուի ինքնին իսկ Ուսուցչապետը, տեղւոյ պարագաները անմատչելի թողած են իրեն ինչ ինչ կարեւոր գրութիւններ, զորոնք եթէ առջեւն ունենար բնականաբար շատ բան կրնար ուղղել կամ ընտրել՝ ի մասնաւորի Կորիւնէն յառաջ բերուած ընդարձակ հատուածներուն մէջ: Մենք պարզ թարգմանութեամբ ուզեցինք ներկայացընել հեղինակին ուսումնասիրութիւնը՝ առանց ո եւ է բնագրական սրբագրութեան փորձի մը ձեռնարկելու կամ տեղ տեղ ամբողջացուցիչ դիտողութիւններ յաւելլու:

Վիեննա, 15 Դեկտեմբեր 1912:

Հ. Ա. Վ.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

—

"Պատմութիւն հայերէն նշանագրերու եւ Վարուց Ս. Մաշթոցի" հետագայ յօդուածը կը կազմէ հայ պատմութեան վերաբերեալ ուսումնասիրութեանց շարքի մը առաջին հատորը: Ուսումնասիրութիւնս նախապէս Համբուրգի արեւելագիտաց ժողովքին մէջ (1902) քննախօսելու համար գրուած էր. բայց որովհետեւ ժողովքի յիշատակարաններու մէջ քննախօսութիւնները քաղուածօրէն, ուրեմն կրճատուած պիտի տպուէին, հրատարակութիւնը առ ժամս զանց առնուեցաւ: 1905ին աշխատութիւնս Լազարեան Արեւելեան լեզուաց ճեմարանէն մրցանակով մը պսակուեցաւ: Անմարկիս անդրագոյն կատարելագործման մասամբ առողջութեանս անքաւական վիճակը եւ մասամբ գլխաւորաբար հնագրական ատաղձի պակասը արգելք հանդիսացան: "Հանդէս Ամսօրեայ"ի համակրելի Խմբագիր Մեծ. Հ. Ներսէս Ակինեանի հետ խօսակցութենէ մը յետոյ (1910 աշնան) որոշեցի վերջապէս "Հանդէս"ի մէջ հրատարակել ուսումնասիրութիւնս այնպէս ինչպէս որ էր: Ձեռագիրը 1911 Մարտին յանձնուեցաւ տպարան. բայց դժբախտաբար տպագրութիւնը բաւականաչափ ուշացաւ ձուլուելի կէտերու յարուցած դժուարութեան պատճառաւ:

Բերլին-Վիլմերսդորֆ, 3 Դեկտեմբեր 1912:

Յ. ՄԱՐԿՈՒԱՐՏ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅԵՐԷՆ ՆՇԱՆԱԳՐԵՐՈՒ ԵՒ ՎԱՐՈՒՑ Ս. ՄԱՇԹՈՑԻ

ԵՒ ՆՇԱՆԱԳԻՐՔՆ ԻՍԿ ՅԱՅԼՈՑ
ԴՊՐՈՒԹԵԱՆՑ ԹԱՂԵԱԼՔ ԵՒ ՅԱ-
ՐՈՒՑԵԱԼՔ ԴԻՊԵՑԱՆ

*Կորիւն, Վարք Մաշթոցի, էջ 18։*

Պատմագէտին համար նորանշան տեսարան մըն է այն, որ միայն այն ժողովուրդները, որոնք դեռ չէին հելլենացած կամ հռոմէացած, ինչպէս Ասորիները, Ղպտիները, Գոթացիները, Հայերն եւ արեւելեան Սլաւները, մտնելով յունական քրիստոնէութեան շրջանակի մէջ եւ հոն մնալով՝ Հին դարերու վերջերն ունեցան սեպհական գրականութիւն ժողովրդական լեզուաւ ու նշանագրով, մինչ միւս բոլոր ազգերու քով, որոնց վրայ Հին Հռոմայ միակ պատրիարքութիւնը իւր բացարձակ իշխանութիւնը կը տարածէր, — Իրլանդացիներն եւ Իսլանդացիները միայն որոշ չափով մը ի բաց առնլով, — նախ անհանդուրժողութեան կողմանէ միայն Արաբացիներու հետ համեմատելի հռոմէականութիւնը եւ յետոյ նաեւ Եկեղեցին այնպիսի ջան ի գործ դրին համոզում յառաջ բերելու, թէ գռեհիկ են եւ անպէտ իրենց լեզուն եւ բանաստեղծութիւնները՝ համեմատութեամբ Քրիստոնեաները հալածողներու ազնուական լեզուին, եւ տածելու պղուում ու արհամարհանք դէպ ի իրենց սեպհական հին աւանդութիւններն եւ առանձնայատուկ սովորութիւնները, որ ոչ միայն յատուկ ժողովրդական կեանք եւ գրա-

կանութիւն կարելի չեղաւ զարգայնել, այլ եւ անոնք ինքնին, որչափ այն իրենց ձեռքն էր, եւս արագացուցին ազգայնութեան քայքայումը եւ խառնուրդը (Գաղղիացիք, Բեսացիք, Ալբանացիք, Բրիտանիացիք)։ Գերման Մուսան ի հարկէ չլռեց երկար, եւ եթէ նաեւ հին դիւցազներգութիւնները զոհ գացին եկեղեցւոյ այն ճիգերուն, այսու հանդերձ Նիբելունգեան ու Վալթէրի մը երգերուն բարեգուշակ ճակատագիր մը ապահովուած էր։ Մինչեւ այսօր ալ արեւմտեան-եւրոպական բոլոր լեզուներու վրայ, սպաներէնն ու իտալերէնը դուրս թողլով, հռոմէական գրին անէծքը ու իրենց մասնական պէտքերուն համապատասխանող սեփական գրի եւ ուղղագրութեան մը պակասը կը ծանրանայ տակաւին ուժգին։

Սեփական գիր ունենալու երջանկութիւնը անտարակոյս նաեւ յունական եկեղեցւոյ սահմանին մէջ զլացուեցաւ ազգի մը — Կապպադովկացւոց, բայց հոս հռովմէական տիրապետութենէն յառաջ արդէն սկսած էր հելլենականութիւնը եւ չորրորդ դարուն իր Եկեղեցւոյ Ջահերն՝ աթենական քաղաքին մէջ կրթուած ըլլալով՝ գեղջկային խժդուժ բարբառին դէմ խոր արհամարհանքով լեցուած էին բնականաբար։ Բաց աստի՝ Կապպադովկիացիք երկայն ատենէ իվեր արդէն ընտելացած էին օտար լեզուներ գործածելու կրօնական պիտոյքներու համար։ Բարսեղ Մեծի սաստիկ ատելի թշնամիները՝ մոգերն, երանեան լեզուաւ կը կատարէին իրենց պաշտամունքը, եւ արձանագրութեանց համար կը կիրարկէին արամերէնը[1], մինչ

---

[1] Տես J. MARQUART, Untersuchungen zur Gesch. von Eran II, 1905 (տպ. 1900), էջ 118—123։ LIDZBARSKI, Ephemeris der semitischen Epigraphik I 1 (1900), էջ 59—74. I 3 (1902), էջ 319—326. HANS REICHELT, WZKM, XV. 1901, էջ 51—56։

ատոնց հակառակ՝ Եկեղեցին հզօր թիկունք կը հանդիսանար հելլենականութեան։ Այս պատճառաւ թէպէտ եւ ցայժմ կապպադովկիական լեզուաւ գրուած տող մ'իսկ չունինք[1], այսու հանդերձ կը թուի թէ այս ժողովուրդը իւր արեւելեան դրացիներուն՝ հայերու նման հնչական տարբերութիւններու համար փափուկ ու զգայուն ականջ մ'ունէր։ Գոնէ Ս. Գրոց գոթական թարգմանութեան կապպադովկիական ծնողներէ սերած հեղինակը, գերմանի մը համար անլուր լեզուական այնպիսի զգածմամբ օժտուած է, զոր միայն իւր ծնողներէն ժառանգած կրնանք նկատել։

“Բարբարիկ լեզուներու„ համար յատուկ աղփաբետներու յետ-քրիստոնէական ստեղծագործութեանց մէջ ապահովապէս ամենադարմանալին է հայ գրի գիւտը։ Գրիգոր Լուսաւորիչ հաւանականօրէն հայերէն քարոզած է. թէեւ առ այս յայտնի վկայութիւն չկայ[2] եւ անկարելի է ըմբռնել թէ ո՞ւր սորված պիտի ըլլայ հայ լեզուն, եթէ, ինչպէս աւանդութիւնը կ'ըսէ, իբրեւ Պարթեւի որդի մը ի մանուկ տիոց Կեսարիա բերուեցաւ եւ հո՛ն կրթուեցաւ։ Բայց հիմ ունինք այս աւանդութեան չվստահելու եւ Հայոց դարձին

---

[1] Ինծի ծանօթ է միայն ΔΣΑΡΙ կամ ΣΑΡΙ սեռականը կապպադովկիական քանի մը դրամներու վրայ, որ՝ ինչպէս դրամներու պատկերները կռահել կու տան, նշանակելու է “քրմապետ„ եւ այն՝ Անայիտիս դիցուհւոյն։ Դրամներէն մին կը ծագի Տիւանայէն, ուրիշ մը կը ցուցընէ անունը Անիսա քաղաքին, որուն դիրքը դեռ անծանօթ է. այս քաղաքէն ունինք նաեւ յունական արձանագրութիւն մը։ Հմմտ. E. CURTIUS: „Ueber ein Dekret der Anisener zu Ehren des Apollonios“. Monatsberichte der Berl. Akad. 1886, էջ 646--651, եւ ΔΣΑΡΙի մասին MARQUART: „Unters. zur Geschichte von Eran“ I, 37 եւ յաջ։

[2] Ագաթ. § 157, էջ 79, 58f. տպ. LAGARDE = էջ 636, 24—637, 10 (Վենետիկ 1862, 32°) ընդօրինակուած է Կորիւնէն, էջ 22, 25—32։

ամբողջ պատմութիւնը շատ աւելի ըմբռնելի կ'ըլլայ, եթէ, ինչպէս ես կը կարծեմ, Գրիգորի զարգացման վայրը զետեղենք Հռոմէական-Հայական սահմանի մօտերը — Նէոկեսարիա կամ Փոքր Հայք[1]: Ասով փոքր հասակէն թէ յունարէնի եւ թէ հայերէնի կրնար քաջ տեղեակ ըլլալ:

Յամենայն դէպս յունարէն լեզուն բաւական կը հասկնար՝ Ընթերցուածներն ունկնդիրներուն բերանացի թարգմանել կարենալու չափ. ոչ այսպէս սակայն իւր յաջորդները եւ կղերին մեծամասնութիւնը, որ հեթանոս քուրմ էին նախնաբար եւ ապա դարձած. նաեւ կղերին մէկ մասը կը կազմէին բազմաթիւ ասորիները՝ ի մասնաւորի երկրին արեւմտեան կողմերն եւ նոյն իսկ Տարօնոյ Աշտիշատ քաղաքին մէջ, որ յետոյ կաթողիկոսանիստ եղաւ: Ասորի մը Դանիէլ անուն, իբր թէ Լուսաւորչի մէկ աշակերտը, կը պատմուի թէ իւր Վարդապետէն քորեպիսկոպոս օծուած ըլլայ եւ կաթողիկոսական թեմին ընդհանուր տեղապահը անուանուած[2]: Այս պատմութեան մէջ սակայն, կրնանք ըսել ապահովութեամբ թէ բուն հանգամանքը դիտմամբ մութ թողուած է: Մեր առջեւն եղած տեղեկութիւնները ուշի ուշով եւ խնամով վերլուծելով կը հանինք այն եզրակացութեան թէ Աշտիշատ Ներսէս կաթողիկոսի օրով միայն կաթողիկոսութեան նիստ եղած է, իսկ չորրորդ դարու առաջին կիսուն տեսակ մը անկախութիւն վայելած է եւ մրցակից հանդիսացած՝ Բագրեւանդայ Բագաւանին եւ պետութեան մայրաքաղաքին դէմ եւ անտարակոյս հարաւային կողմանէ (միջագետային կամ ադիաբենական) Ասորիներու — ըլլայ Դանիէլի ըլլայ անոր նա-

---

[1] Այս մասին ընդարձակագոյնս գրած եմ արդէն ձեռագիր յօդուածի մը մէջ, որ նուիրուած է Հայոց մասնական Թագաւորներու պատմութեան:

[2] Փաւստոս, Գ. 14:

խորդներէն մէկուն — ձեռքով դարձի բերուած ու հիմնուած է[1]։ Անկանոն ընթացք մը ունեցած պիտի ըլլայ իրաց վիճակը իսկզբանէ անտի բուն Հարաւային Հայաստանի՝ յետոյ սատրապութիւնք անուանուած երկրամասերու մէջ, որոնք 297էն սկսեալ (գոնէ մեծ մասամբ) հռոմէական պետութեան կը պատկանէին։ Ցամենայն դէպս Հայաստանի բաժանումէն ետքը հոս կը գտնենք միայն ասորի եպիսկոպոսներ եւ ասորական եկեղեցականութիւն։

Վստահելի տեղեկութիւն կը պակսի մեզի, թէ ինչ լեզուաւ կարգադրած է Ս. Գրիգոր ծէսերը. բայց որովհետեւ Հայ Եկեղեցին Կեսարիոյ Մետրապոլիտին իշխանութեանը տակ ձգած է, հաւանականութիւնը կը միտի հաստատելու թէ եկեղեցական լեզուն գլխաւորաբար յունարէն էր՝ ի մասնաւորի գլխաւոր եկեղեցիներու մէջ. միեւնոյն ատեն սակայն զանազան տեղեր իսկզբանէ հետէ ասորերէնն ալ դեր մը խաղացած պիտի ըլլայ։ Սուտ-Մովսէս Խորենացի կը պատմէ թէ 367ին հայ եկեղեցական լեզուն էր յունարէն եւ Մերուժան Ուրացողը յունարէն գրքերը՝ զորոնք միանգամ ձեռք կը ձգէր, կ'այրէր, կ'արգելուր յունարէն դպրութիւնը եւ թոյլ կու տար միայն ասորերէնի ուսումը[2]։ Այս տեղեկութիւնը սակայն կարելի չէ վերստուգել. Փաւստոս Բիւզանդացի, որ Մերուժանայ եղեռնական գործքերուն ընդարձակ տեղ մը նուիրած է (Գիրք Դ. Գլ. 23էն մինչեւ Գիրք Ե. Գլ. 43) եկեղեցական յոյն գրքերու կարծեցեալ այրման մասին ոեւէ լուր հաղորդած չէ[3]։ Ընդ-

---

[1] Տե՛ս, էջ 4, ծանօթ. 1, յիշեալ յօդուածը։

[2] Այսպէս Գ. 54, էջ 248. — Գ. 36, էջ 224 կ'ըսուի «Հրաման տայր մի՛ ուսանել զդպրութիւն յունարէն, այլ պարսիկ»։

[3] Դ. 59 միայն եկեղեցիներու քանդումը կը պատմուի։

հակառակն կը պատմէ թէ ինչպէս Ներսէս Հայրապետ Արշակայ թագաւորութեան ժամանակ կարգեր ի տեղիս տեղիս դպրոցս յունարէն եւ ասորերէն յամենայն գաւառս Հայոց (Գիրք Դ. Գլ. 4, էջ 78), որոնք գործնական կարօտութեան մը պակասը պիտի լրացնէին անտարակոյս։ Պէտք է ընդունիլ ըստ այսմ, որ նոյն ատեն թէ՛ ասորի եւ թէ՛ յոյն ծիսակատարութիւնը տարածուած էր Հայ երկրին մէջ։ Բնական է որ 384ին հայկական պետութեան բաժանումէն սկսեալ՝ արեւմտեան (յունական) մասին մէջ տիրող եղած պիտի ըլլայ յունարէնը, իսկ արեւելեան (պարսկական) մասին մէջ՝ ասորերէնը։ Ուստի երբ Փարպեցին կ'ըսէ թէ Մաշթոցի ժամանակ Հայ եկեղեցւոյ լեզուն ասորերէն էր, պէտք է հասկնալ ի հարկէ միայն պարսկական Հայաստանը, որ նոյն ատեն դեռ իր սեպհական թագաւորն ունէր։

Սակայն Հայ հոգեւորականները, որոնք կրթութիւն ստանալու համար Ասորիք (Միջագետք) դիմելու ստիպուած էին, ասորերէն լեզուի մէջ առ հասարակ միջակ հմտութիւն մը ձեռք կը բերէին, այնպէս որ շօշափելի անպատեհութիւններ յերեւան կ'ելլէին՝ ինչպէս զանազան ժամանակներու մէջ նաեւ միջնադարեան Գերմանիայի մէջ սովորաբար կը պատահէր։ Կ'ողբայ Ղազար Փարպեցի "տեսանելով զմեծ ջանն եւ զառաւելապէս ծախս մանկանցն Հայաստան աշխարհիս. որք բազում թոշակօք եւ հեռագնաց ճանապարհօք եւ բազմաժամանակեայ դեգերմամբք մաշէին զաւուրս իւրեանց ի դպրոցս ասորի գիտութեան։ Քանզի պաշտօն եկեղեցւոյ եւ կարգացմունք գրոց ասորի ուսմամբ վարէին ի վանորայս եւ յեկեղեցիս հայաստան ժողովրդոցս. յորմէ ոչինչ էին կարող լսել եւ օգտել ժողովուրդքն այսպիսի մեծ աշխարհի, եւ լինէր պաշտօնէիցն աշխատութիւն եւ

ժողովրդոցն անշահութիւն յանլրութենէն լեզուին ասորւոյ„ [1]։

Սակայն աւետարանի հայ քարոզիչները բոլորովին ուրիշ դժուարութիւններու ալ հարկ էին բախիլ քան իրենց գերման ընկերները. ասոնց համար դիւրին էր լատինական ալփաբետաց օգնութեամբ՝ — եթէ հեթանոսաբոյր ռունական հին ալփաբետքը կամ Վուլֆիլասի հնարած արիոսաշունչ գոթական ալփաբետքն իրենց անձկամիտ մոլեռանդութեամբը չուզէին գործածել — գոնէ փոքրիկ աղօթքներ, երդմնեցուցչական ձեւեր եւ նման “յիշատակարաններ„ նշանագրել գերման լեզուաւ, եւ եթէ ժողովրդեան՝ Աւետարանն ալ իր իսկ լեզուաւ տալու այնպէս բնական գաղափարին դիւրութեան կամ անձկամիտ եկեղեցական քաղաքականութեան նկատումներով գոհացում չտուին, այս մասին պատմութիւնը կը կարդայ անոնց իր վճիռը։ Իսկ Հայաստանի մէջ երկրին յատուկ լեզուաւ տող մ'իսկ գրուած չէր, վասն զի նոյն ժամանակուան ալփաբետներէն եւ ոչ մին բաւական էր հայերէնի բազմաթիւ ու դժուարին հնչումները ներկայացընել. ասոր վրայ կու գային կ'աւելնային երկրին քաղաքական բաժանումէն յառաջ եկած անպատեհութիւնները. պարսկական մասին վերին իշխանութիւնը նորանոր փորձեր կ'ընէր հայ ժողովուրդը զուտ մազդեզանց կրօնին վերադարձընել եւ պարսիկ լեզուն ու մատենագրութիւնը տարածել անոնց մէջ, մինչ արեւմտեան մասին տիրող Հոռոմները անարգանօք կը նայէին բարբարոսներու վրայ եւ անոնց լեզուին ու առանձնայատկութեանց բնականօրէն ո եւ է ըմբռնում չունէին։ Ոչ ամէն մետրապոլիտ այնպէս բանիմաց էր, ինչպէս Մեծն Բարսեղ, որ մասնաւոր ուշադրութեան առած էր

---

[1] Ղազար Փարպեցի. Վենետիկ 1892, 32°, էջ 39–40։

Փոքր Հայոց եպիսկոպոսական աթոռներուն ընտրել այնպիսի մարդիկ, որոնք քաջահմուտ ըլլային հայ լեզուին (Բարս. Թղ. 187)։ Այս պատճառաւ եթէ նկատենք այն պարագաները, որոնց տակ Մաշթոց ու Սահակ իրենց մտքի գործունէութեամբը եկեղեցական ու ժողովրդական ինքնագիտակցութեան զարթուցին հայ ազգը, եւ այս գործքին հետ համեմատութեան դնենք դանայեան այն պարգեւը, զոր Պեպինոս փրանկ քաղաքական ու եկեղեցական ամէն միջոց լիապէս ի ձեռին ունենալով նուիրեց գերման ժողովրդեան, այն ատեն թէ Պեպինոս եւ թէ իւր զինակիրը Վինֆրիդ՝ խեղճ թզուկներ կ'երեւան համեմատութեամբ մտքի այն հսկաներուն։ Ժողովուրդ մը, որ իւր ծոցէն այնպիսի՛ մարդիկ ծնած է եւ զանոնք իբրեւ իւր դիւցազները կը յարգէ, որչափ թէ անոնց օրինակին հետեւի, անկարելի է որ խապառիպուռ ջնջուի՝ որչափ ալ թուրք, քուրդ, թաթար, պարսիկ ու բոլոր մեծ պետութիւններն հակառակ ըլլան անոր։

Ց. Ք. Հինգերորդ դարու սկիզբն Նրանելայն Մաշթոցի այբուբենի գիւտը ըստ այսմ ոչ միայն եկեղեցա-պատմական տեսակէտով նշանակալից է իբր յայտնաբարբառ ապացոյց մը՝ դարձի եռանդին եւ հաւատոյ պատգամաբեր հրեշտակներուն շահաւէտ գործունէութեան անհրաժեշտօրէն հարկաւոր պայմաններու մասին Հեղինակին ունեցած պայծառ տեսութեան, (ինչպիսի էր արեւմտեան գոթացի Վուլփիլասի կէս դարու չափ երիցագոյն սանդղագործութիւնը), այլ նաեւ կը ներկայացնէ մեզի քաղաքակրթական-պատմական անպայման շահագրգռութիւն մը՝ իբրեւ փրկութիւնաբեր գործք ցայնվայր մատենագրութենէն զուրկ ազգի մը քրիստոնէական ազգային զգածման, ազգի մը՝ որ Հայաստանի քաղաքային անկախութեան կորստենէն քիչ մ'առաջ իսկ

*գիտցաւ պաշտպանել հայ առանձնայատկութիւնը օտար ազգի մը հետ համաձուլուելու վտանգին դէմ, եւ կեանք տալ յարաբերաբար հարուստ մատենագրութեան մը, գլխաւորաբար պատմական եւ աստուածաբանական բովանդակութեամբ։ Ահաւասիկ երկու արդիւնք՝ որ պատմական նշանակութիւն ունին, որոնց քով գոթայի եպիսկոպոսին սակաւակեայ ստեղծագործութիւնը հայ կրօնաւորին գործին հետ ո եւ է կերպով չի կրնար չափուիլ։*

*Բնականաբար երգահանութիւնը, որ յառաջ Հայաստանի մէջ ալ կատարելապէս ծաղկած պիտի ըլլայ, հեթանոսական հնաւանդ գեղօններու հետ միասին գերեզման իջաւ անդարձ։ Սակայն ասոր յաջորդեց յարաբերութեամբ ճոխ պատմագրական մատենագրութիւն մը, որ մեզի թոյլ կու տայ՝ ո՛չ միայն չորրորդ դարէն սկսեալ բաւականաչափ յստակութեամբ Հայոց պատմութեան խորշերը թափանցելու, այլ նաեւ ի վաճակի կը դնէ մեզ՝ պարսկական եւ կովկասեան երկիրներու յարաբերութիւնները վերակազմելու։ Միջին դարու ո՛ր ժողովուրդը պիտի կարենար պարծիլ թէ, ըլլայ ի՛ւր իսկ լեզուաւ եւ կամ միայն երջանկայուցիչ լատիներէնով՝ Վարդանայ եւ ընկերացը դիւցազնական պատերազմին՝ Եղիշէի ստորագրութեան համապատասխան գրութիւն մը հրապարակ հանել կրցած է։ Զուտ աստուածաբանական մատենագրութիւնն ալ ունի քանի մը պատկառելի աշխատասիրութիւններ. կը յիշեմ միայն Եզնիկի "Ընդդէմ Աղանդոց„ը։*

*Մաշթոցի աղփաբետը հայ յատուկ ձայնական դրութեան, որ լի է բաղաձայններով, այնպիսի զարմանալի ծանօթութիւն մը կ՚ենթադրէ հնարողին քով, որ չէինք կրնար զլանալ անոր մեր մեծ հիացումը, նոյն իսկ եթէ գոհացած ըլլար օտար աղփաբետ մը հայերէնի յարմարելով եւ քանի մը նշանագրերու յաւելմամբ նոյնը ճոխա-*

ցընելով միայն։ Բայց գրի գիւտի պատմութիւնը տակաւին լուսաբանուած չէ եւ գլխաւորաբար Հայ աղփաբետներու սկզբնական հիմը մթութեան մէջ թաղուած է դեռ։ Պատմախօյզ մասնագէտին առջեւ այստեղ այնպիսի խնդիրներ կ'ելլեն, որոնք այդ դէպքէն յառաջ Հայոց մէջ նշանագրերու գոյութեան եւ անոնց աւանդման կերպին ու եղանակին համար կարեւորութիւն ունին։

Յառաջագունէ արդէն բնական է, որ ազգային Հայ գրի գիւտէն յառաջ արդէն գոնէ արքունիքը՝ ինչպէս դիւանագիտական յարաբերութիւններու նոյնպէս հարկերու համար պէտք ունէր դիւանատան մը։ Սուտ-Մովսէս Խորենացի (Ա. Գ. էջ 7) այս մասին ընդարձակ կը խօսի՝ երբ Հայ թագաւորները կը պարսաւէ, թէ իրենց գործքերը գրով դրոշմելու չունէին այն փոյթը զոր կը տածէին Քաղդէացիք, Ասորեստանցիք, Եգիպտացիք եւ Յոյները, հետեւեալ կերպով։

"Այլ ասիցէ ոք արդեօք. վասն ոչ լինելոյ գիր եւ դպրութիւն ի ժամանակին, կամ վասն պէսպէս պատերազմացն, որ կուռ զմիմեանց զկնի անհետ[1] ի վերայ գային։

Այլ ոչ արդարեւ այսոքիկ կարծեցեալ լինի. քանզի գտանին եւ միջոցք լեալ պատերազմացն, եւ գիր Պարսից եւ Յունաց, որովք այժմ գիւղից եւ գաւառաց եւս եւ իւրաքանչիւր տանց առանձնականութեանց, եւ հանուրց հակառակութեանց եւ դաշանց այժմ առ մեզ գտանին անբաւ գրուցաց մատեանք, մանաւանդ որ ի սեփհական[2] ազատութեանն պայազատութիւն։ Այլ ինձ թուի, որպէս այժմ՝ եւ առ հինսն հայաստանեայց

[1] Կը թարգմանուի unablässig (անդադար)։

[2] Սէպուհ կամ բուն *սէփուհ, ինչպէս սէփհական ածականը կը ցուցընէ. վրացկ. սէփէ-կացուլէ բառին թարգմանութիւնն է. -ուհ, իգ. -ուրհի, -ուհի մասնիկը կը համապատասխանէ հպ. puthra = որդի։

լեալ անսիրելութիւն իմաստութեան եւ երգարանաց բանաւորաց»:

Ըստ այսմ Մովսէս կ'ենթադրէ թէ անգիր ժամանակի մէջ թէ հասարակական եւ թէ առանձնական վաւերագրերու եւ յիշատակարաններու համար Հայաստանի մէջ կը գործածուէին պարսիկ եւ յոյն գրերն (ու լեզուն). եւ ի յառաջագունէ անհաւանական չէ, որ արեւմտեան՝ հռովմէական սահմանագծերուն կից երկրամասերուն մէջ յունական գիրն աւելի տարածուած էր, թէեւ մեծ-Հայաստան երկրին մէջ (Եփրատի արեւելեան կողմը) մինչեւ հիմայ որեւիցէ յունական արձանագրութիւն գտնուած չէ[1]: Սակայն թէ Մովսէսի ժամանակ դեռ (Թ. դար)[2] անգիր ժամանակէն մնացած այնպիսի յիշատակարաններ գոյութիւն ունէին, շատ անհաւանական է. եւ որովհետեւ մենք Ստոյն-Մովսէսի տուած տեղեկութեան աղբիւրը չենք ճանչնար եւ այս՝ շատ լաւ կրնայ Խորենացւոյ՝ Փաւստոսէն, Փարպեցիէն եւ Եղիշէէն ծանօթ՝ Հայաստանի քաղաքական եւ քաղաքակրթական հանգամանքներու անդրադարձ մէկ խորհրդածութենէն ծագիլ, այս պատճառաւ մեր նպատակին համար աւելորդ կը կարծենք ասոր վրայ ծանրանալ:

Լաւագոյն ծառայութիւն չեն մատուցաներ Խորենացւոյ տուած ուրիշ քանի մը տեղեկու-

---

[1] [Բացառութիւն մը կը կազմէ C. F. LEHMANNի Նփրկերտ-Տիգրանակերտի մէջ գտած արձանագրութիւնը, զոր բախտաւոր գտիչը կը վերագրէ Պ--դ Թագաւորին: Տես նոյնին գործքը „Armenien einst und jetzt“, I. Բերլին 1910: Սրբագրութեան յաւելուած:]

[2] Մար Աբաս Մծուրնացւոյ մասին գրած մէկ յօդուածիս մէջ պիտի ապացուցանեմ թէ, սոյն անձնաւորութիւնը իններորդ դարու առաջին կիսուն ծաղկած է եւ թէ Խորենացւոյ պատմութիւնը --յն դ-ր-- երկրորդ կիսուն գրուած է՝ Աշոտ մեծի պսակումէն յառաջ:

թիւնները. կը պատմէ թէ Խոսրով Ա. (Յ. Ք. գրեթէ մինչեւ 250) Կովկասի մէջ՝ ի նշանակ իւր տէրութեան, հելլենացի գրով արձան հաստատած ըլլայ (էջ 145) եւ Տրդատ, ինչպէս կ'ըսուի, Գառնի ամրոցին մէջ ի յիշատակ իւր քրոջ Խոսրովիդխտոյ յիշատակարան մը կանգնել կու տայ հելլէն գրով (էջ 177)։ Հայ թագաւորներու իբրեւ թէ կանգնած այս հելլենագիր յիշատակարանները՝ Խորենացւոյ յունասիրական ծանօթ զգածման շատ համապատասխանելով, պէտք չէ ըստ ինքեան ո եւ է ծանրակշռութիւն տալ անոնց։ Այս իբր թէ կանգնուած յիշատակարաններուն ի շնորհս՝ չենք կրնար բնականաբար Մեծ-Հայաստանի[1] Նախ-արշակունեան թագաւորներու յոյն դրամները վկայութեան բերել[2], ըստ որում Մեծ Հայաստանի արշակունիներն ըստ ինքեան դրամ կոխած չեն։ Երբ ընդհակառակն Կորիւն Մաշթոցի մասին կը հաստատէ թէ "ի մանկութեան տիսն վայելեալ հելլենական դպրութեամբն, եկեալ հասեալ ի գաւառն Արշակունեաց Հայոց մեծաց, կացեալ յարքունական դիւանին, լինել սպասաւոր արքայատուր հրամանին„[3], պատմութեան կապակցութիւնը կը թուի հոն յանգիլ թէ նոյն ատեն Հայ արքունեաց դիւանական լեզուն յունարէն էր։ Միայն թէ այս եզրակացութիւնը կը խախտուի խորհրդածութեամբս թէ Հայաստան նոյն միջոցին չունէր իւր սեփական թագաւորը, այլ պարսիկ վերին իշխանութեան ներքեւն էր եւ Արքայից Արքային անուամբը բնիկ հազարապետէ (Reichs-

---

[1] Հմմտ. E. BABELON: „Les rois de Syrie, d'Arménie et de Commagène", p. CCI—CCVI, 213է մինչեւ 216. Pl. XXI, 1—21.

[2] Այսպէս A. v. GUTSCHMID: „Kl. Schriften", III, 401։

[3] Կորիւն, Վենետիկ 1894, 8°, էջ 13—14։

verweser) մը կը կառավարուէր[1]։ Այս հազարապետը սակայն պաշտօնական գրութիւնները եւ կենդրոնական կառավարութեան հետ ունեցած յարաբերութիւններն անտարակոյս կը կատարէր պարսկերէն լեզուաւ։ Կորեան տեղիքն ըստ այսմ մեծագոյն հաւանականութեամբ այսպէս պէտք ենք մեկնաբանել թէ՝ Մաշտոց յոյն դպրութիւնը ուսած է հայրենիք, Աշտիշատի մօտ Հացեկաց գիւղը — կը պատմուի արդէն թէ Ներսէս Կաթողիկոս ի տեղիս տեղիս յամենայն գաւառս Հայոց կը կարգէր դպրոցս (= Schreibschulen) յոյն եւ ասորի լեզուներու[2] — եւ արքունական դիւանին մէջ, ինչպէս ընթերցողն անձամբ արդէն կը հասկնայ, սորվեցաւ նաեւ պարսկերէնը։

Ցայժմ հայ աղփաբետներու ծագման նուիրուած հետազօտական ջանքերն ալ, որչափ որ ծանօթ եղած են հեղինակին, խնդրոյն լուսաւորման շատ նպաստած չեն։ ԼԱԳԱՐԴԻ[3] կարծիքով մաշթոցեան գրերու հիմ եղած է յունարէնը, ճոխացած խպտական հետեւեալ չորս նշանագրերով.

X = ճ, č
Ч (f) = վ, w
Ϭ = ձ, ź (dz)
Ƨ (h) = հ, h

ինչպէս նաեւ ասորի ȷ = յ[4] եւ ʒ = ծ[5] նշանագրերով։ Բաց աստի կը դնէ Ղ = Λ եւ Ռ = P.

---

[1] Հմմտ. մեր վերը, էջ 4, ծանօթ. 1, յիշած յօդուածը։

[2] Փաւստոս, Դ., 4, էջ 78։

[3] Ges. Abh. IX եւ յաջ.

[4] Armen. Stud. էջ 2։

[5] Mitteil. I, 154 f.

Սակայն ամենեւին չի կրնար տարակուսուիլ թէ Ռ գիրը Րի կրկնումն է, ուստի՝ Րր, իսկ Ղ՝ Լի մէկ եղանակաւորումը։ Ը, Ժ, Ղ, Խ, Ն, Ր, Ց (եւ Ջ, զոր կը մոռնայ Լագարդ) նշանագրերը կը մնան իրեն համար անորոշ։ Նաեւ ՀԻՒԲՇՄԱՆ եւ ԳԱՐՏԴ-ՀԱՒՍԷՆ[1] (վերջինս կարծեկից ԼԵՊՍԻՈՍի, Standard Alphabet) Հայ աղփաբետները յունարէնէ առնուած կը համարին։ ԳԱՐՏԴՀԱՒՍԷՆ կ'ըսէ "Լեպսիոս (Standard Alphabet, էջ 133) շատ իրաւունք ունի, երբ յոյն գլխագիրները (Հայ գրերու) բուն հիմը կը համարի. միայն քանի մը պարագաներու մէջ չեն գոհացըներ զմեզ գլխագիր ձեւերն, այնպէս որ ակամայ կը ստիպուինք նոյն ժամանակուան նոտրագրերուն օգնութեանը դիմել„[2]։ Հայ նշանագրերու ծագման մասին այս ամէն կարծիքներու մէջ մեծ դեր կը խաղայ ի հարկէ Հայ աղփաբետներու այժմեան կարգը. բայց Հայ նշանագրերու յոյն աղփաբետներու հետ ունեցած համաձայնութիւնը՝ մեր ձեռքն եղած տեղեկութիւններուն համաձայն՝ Մաշթոցէն մուծուած նորութիւն մըն է, ուստի այս ըսուածը չի կրնար արժէք ունենալ նաեւ իբր օրինակ առած Դանիէլ ասորի եպիսկոպոսին աղփաբետին համար։ Քանի մը նշանագրերու համար բնականաբար կրնայ յամենայն դէպս նկատի առնուիլ յունական ծագում մը, ի բաց առնլով ստուգապէս զուտ յունականները որոնք յետոյ պիտի լուսաբանուին։ Իսկ յունական աղփաբետներէ պարզ փոխառութեան մը ենթադրութիւնը այնու արդէն կը տապալի, որ Ղ = Λ եւ Ռ = P դնելու հարկը կը զգայ. ըստ որում առաջին ակնարկով իսկ արդէն պայծառ կը տեսնուի, թէ Ղ նշանագիրը, ինչպէս քիչ մը յա-

---

[1] ZDMG. 30 (1876), էջ 74—80, 62 ff.

[2] Այնպէս նաեւ Ֆր. Միւլլէր, WZKM. IV, 288.

*ուած նկատեցինք, Լի մէկ եղանակաւորումը կամ աւելի ճիշտ բացատրելով՝ անոր մէկ կրկնումն է (= ΓL), ինչպէս Ռն Րի կրկնումը։ Բաց աստի կարելի չէ ըմբռնել օրինակի համար թէ ինչպէս կրնան հայերը մղուած ըլլալ ֆի համար խպտի* Վ = *f գործածել, մանաւանդ որ ֆ-ը ուրիշ բան չէ, եթէ ոչ յայտնապէս դարձեալ կրկնուած նշանագիր մը, այսինքն կրկին Ւ։*

ՖՐ. ՄՈՒԼԼԷՐ *ընդհակառակն Իսահակ Տէյլըրի*[1] *հետ հայ նշանագրերը կ'ուզէ առնուած համարիլ "իրանեան-սեմական„ այփաբետքէ մը եւ հետեւելով Ստեփան Ասողկան (ԺԱ. դարու ակիզբը) մէկ խօսքին, թէ նախ Դանիէլ Ասորի կարգած ըլլայ 29 գիր Հայոց լեզուիս, եւ այնուհետեւ Մեսրոպ պակսած եօթը նշանագրերը լրացուցած ըլլայ, կ'ըսէ. "Որովհետեւ 29 նշագրերէ բաղկացած նախամեսրոպեան այփաբետներու հեղինակն Ասորի մը կը նշանակուի, պէտք էինք այնպիսի գիր մը մեր աչքին առջեւ բերել, որ նոյն ժամանակուան Պարսից պետական (պահլաւ կոչուած) գրին հետ խնամութիւն ունենար*[2] *եւ արամէական աղբիւրէ մը հոսէր*[3]*։ Իսկ Մեսրոպայ (կարդա՛ Մաշթոցի) լրացուցած եօթը նշանագրերն՝ անշուշտ յոյն նշանագրերէն առնուած եօթը ձայնաւորներն էին։ Ինչպէս ինծի նոյնպէս ուրիշներու ալ կարծեմ հաւասարապէս մթին պիտի թուի նստրատիպ նախադասութեան արտայայտած տրամաբանութիւնը. դժբախտաբար շատ կնճռոտ է այս տեղ խնդիրն եւ այնպէս դիւրին չ'երեւար հոս ալ անաչխատ դափնիներ քաղելու ջանալ որուն շատ վարժ էր* ՖՐ. ՄՈՒԼԼԷՐ։

*Ցետոյ սակայն*[4] *մեր յառաջ բերած այս*

---

[1] The Alphabet (1883), II, 268 *եւ յաջ.*
[2] *Մենք կը նոտրագրենք.*
[3] WZKM. IV, 246.
[4] WZKM. IV, 284 ff.

կարծիքը դարձեալ մէկ կողմ ձգուեցաւ ի շնորհս Վարդանի (ԺԳ. դար) տուած տեղեկութեան, զոր արդէն ԼԱՆԳԼՈՒԱ (Collection des historiens Arméniens II, 6 f.), ԷՄԻՆ եւ ՀԻՒԲՇՄԱՆ յիշատակած էին։ Վարդանի ըսածին նայելով՝ Մեսրոպ՝ Դանիէլ Ասորւոյն քով 22 նշանագիր գտած եւ անոնց վրայ իր կողմանէ 14 նշանագիր ալ աւելցուցած է։ Որովհետեւ այս 22 նշանագրերուն թիւը "ասորի աղփաբետքի նշանագրերուն զարմանալի կերպով (!) կը համապատասխանէ", այսու արդէն ՖՐ. ՄԻՒԼԼԵՐի համար "Նախամեսրոպեան նշանագրերու ասորի աղբիւրն ապացուցուած է։"

Յետոյ յաջորդ էջին մէջ շատ աւելի անորոշ կերպով կ'ըսէ. "Որչափ որ ալ Դանիէլեան նշանագրերուն հիմն էր ասորական գիրը, սակայն այսու հանդերձ կ'երեւայ թէ կամ անոր կարեւոր մէկ եղանակաւորումն էին անոնք կամ բոլորովին տարբեր՝ նոյն ատեն գործածական ասորի նշանագրերուն ազգակից աղփաբետք մը իրենց աղբիւր ունեցած էին, ապա թէ ոչ՝ անբաւական պիտի չհամարուէին եւ պէտք պիտի ըլլար գոհանալ առօրեայ կենաց, այսինքն յոյն, ասորի կամ պարսիկ (պահլաւ)՝ նշանագրերով, որոնք դանիէլեան գրերէն աւելի ճոխ չէին։

Թէ ինչպէս ՄԻՒԼԼԵՐ կը ջանայ Վարդանն ու Ասողիկ իրարու հետ ներդաշնակութեան բերել, զայս կարելի է ընթեռնուլ Միւլլերի քով։ Իսկ Ստեփանոս Ասողկան եւ Վարդանայ, նոյնպէս եւ ուրիշ քանի մը մատենագիրներու (Յովհաննէս Կաթողիկոսի, Սամուէլ Անեցւոյ եւ Կիրակոս Գանձակեցւոյ) տուած տեղեկութիւնները կրնար Միւլլեր գտնել Լանգլուայի քով (Collection II, 6 f.)։ "Թէ ո՛ր ասորի ալփաբետքը հայ գրին հիմը կազմած է, կ'ըսէ, կարելի չէ հաստատել", ի վերջոյ սակայն կը կարծէ թէ ըլլայ յետ-քրիս-

տոնէական առաջին դարերու պալմիւրական գիրը կամ թերեւս աւելի հնագոյն նշանագրական աղբիւր մը[1]։

Թէ որչափ անյարիր է Ժ. եւ ԺԳ. դարերու մատենագրերուն տեսութիւններէն հայ ալփաբետքի ծագումն ապացուցանել ջանալ, հարկ չեմ տեսներ զայն մեկնաբանել պատմագէտներու։ Այս տեսութիւններու մէջ տիրող հակասութիւնները բաւականէն աւելի կը ցուցընեն արդէն, թէ հաստատուն աւանդութիւն մը գոյութիւն չունէր եւ թէ հետագաները ջանացին՝ ամէն մէկը իր կրցածին չափ՝ մեկնութիւն մը տալ խնդրոյն։ Ուստի ամէնէն պարզը կ'ըլլար՝ նշանագրերուն որպիսութեանց անմիջնորդաբար համեմատութեամբ հաստատել անոնց ծագումը։ Սակայն հայ հին նշանագրերը թէեւ գլխագիր այնպիսի հանգամանք մը ունին որ հոս երեւակայութեան առջեւ շատ ընդարձակ ասպարէզ կը բացուի, եթէ ուրիշ միջոցներ առաջնորդ չառնուին. այս պատճառաւ մեր խնդրոյն համար շատ կարեւոր է նախ եւ յառաջ Մաշթոցեան գիւտի մասին եղած հին տեղեկութիւնները լսել եւ հետազօտել թէ արդեօք անոնք կարեւոր ուղղութիւն մը մատնանիշ չե՞ն ըներ։

Մեզի համար ամէնէն հաստատուն աղբիւրն է Ղազար Փարպեցի (գրեթէ Ե. դարու վերջերը), շատ պատկառելի պատմագիր մը, որ իր երկը կը սկսի՝ իր նախորդներուն նկարագրականովը։ Փարպեցին իբրեւ աղբիւր ընթերցողին առջեւ կը դնէ յայտնապէս Կորեան՝ Մաշթոցի վարքը. «Եւ զայս թէ կամիցի ոք գիտել հաւաստեաւ՝ ի պատմութենէ գրոց առն ցանկալի Կորեան, աշակերտի նորին երանելւոյն Մաշթոցի, կարդացեալ տեղեկասցի զվարս կենաց նորա եւ զիւր հայերէն նշանագրացն,

1 Անդ. IV, 288.

թէ երբ (գտան) կամ ուր եւ կամ յոյր ուրուք ձեռն. գտանէ (թէ) թագաւորին Հայոց Վռամշապհոյ ջերմեռանդն խնդրելով (հնարեցան նշանագիրքն)։ Զոր (զպատմութիւն) կարգեաց գրելով ճշմարտապէս յառաջագրեալ այրն հոգեւոր Կորիւն, ուստի եւ մեր բազում անգամ կարդալով տեղեկացեալ հաւատեաւ„[1]։

Տեսնենք այժմ թէ ինչ կը հաղորդէ Կորիւն իւր վարդապետին անձնաւորութեան ու գործքին նկատմամբ[2]. երկայնածիգ յառաջաբանէ մը ետքը այսպէս կը սկսի Կորիւն իւր պատմութիւնը.

“Առն, զոր ի նախակարգ բանիս նշանակեմք, վասն որոյ եւ փոյթ արարեալ մեր պատմելոյ, էր Մաշթոց անուն, ի տարաւնական գաւառէն, ի Հացեկաց գեղջէ, որդի առն երանելոյ Վարդան կոչեցելոյ։ Ի մանկութեան տիսն վարժեալ հելլենական դպրութեամբն, եկեալ հասեալ ի գաւառն

---

[1] Ղազար Փարպեցի. Գլ. Ժ. էջ 38—39։

[2] Կը գործածեմ Վենետկոյ 1894ի, 8⁰ հրատարակութիւնը։ Մինչեւ հիմայ քննական բնագիր չէ ունեցած Կորիւն։ Հմուտները սակայն պէտք են գիտնալ, թէ հայ դասագիրքներու նախերգած ժողովրդական աշխատութիւնները պէտք են ըլլալ Կորիւնին, որ անոնց մէջ առաջին տեղին ունի։ Աստուածաբաններն ու պատմագէտները, որոնք տեղեակ չեն հայ լեզուի, B. WELTEի գերմ. թարգմանութիւնը (Goriun's Lebensbeschreibung des heil. Mesrop; Anzeige der 25 jährig. Regierung des Königs Wilhelm, Tübingen 1841, 4⁰) կրնան գործածել, որ միայն թէ մանրամասնութեանց մէջ շատ անճիշդ է։ Այս թարգմանութիւնը կը թուի թէ անծանօթ մնացած է նոյն իսկ A. v. GUTSCHMIDի, որ (Kleine Schriften III, 371 ff.) անձին փաստով կը վստահի Լանգլուայի։ Վերջինս իւր Collection des historiens Arméniensի (II, p. 9–16) մէջ [illegible] Կորիւնը՝ յետնագոյն միջնադարեան խմբագրութիւնը թարգմանած է, որ գործածած է սուտ Մովսէս Խորենացւոյ՝ Եպիփանու Սամոսացի աշակերտին՝ Հռոփանոսի եւ գրող թաթի մասին պատմած վէպը (Խոր. Գ. գլ. ԾԳ.)։

Արշակունեաց թագաւորաց Հայոց մեծաց. կացեալ յարքունական դիւանին, լինել սպասաւոր արքայատուր հրամանին առ հազարապետութեամբն աշխարհիս Հայոց՝ Առաւանայ ուրումն։ Տեղեկացեալ եւ հմուտ եղեալ աշխարհական կարգաց, ցանկալի եղեալ զինուորական արուեստին իւրոց զօրականացն, եւ անդէն ուշ եդեալ փութով ընթերցուածոց աստուածեղէն գրոց, որով առժամայն լուսաւորեալ եւ թեւամուխ միջամուխ յաստուածատուր հրամանացն հանգամանս (լեալ), եւ ամենայն պատրաստութեամբ զանձն զարդարեալ, հարկանէր զիշխանացն սպասաւորութիւնսն։

Եւ յետ այնորիկ ըստ աւետարանական շաւղացն՝ ի ծառայութիւն Աստուծոյ մարդասիրին դարձեալ, մերկանայր այնուհետեւ զիշխանակիր ցանկութիւնսն, եւ առեալ զխաչն պարծանաց, ելանէր զկնի ամենակեցոյց խաչելոյն„[1]։

Այս ամէնը կը կրկնէ Փարպեցի՝ քանի մը համառօտութիւններով եւ մէկ յաւելուածով՝ "ի ժամանակս սորա (Վռամշապհոյ) թագաւորութեանն տուաւ շնորհ հոգողութեան յամենախնամէն Աստուծոյ առն միում ճշմարտի՝ Մաշթոց անուն կոչեցելոյ, որ էր ի գաւառէն Տարօնոյ, ի Հացեկաց գեղջէ, որդի առն որում անուն էր Վարդան, ի տիս մանկութեան իւրոյ ուսեալ դպրութիւն զյոյն, զինուորեալ է դրան Հայոց արքային Խոսրովայ[2], կարգեալ յերամ մատենագիր արքունի դպրացն։ Վասն զի ասորի եւ յոյն գրով վարէին յայնժամ զգործ թագաւորացն Հայոց արքունի դպիրքն, զվճռոցն եւ զհրովարտակացն։ Եւ սպասաւորեալ անդ ամս կարգաւորութեան՝ երթայ ի վանս բազմութեան

[1] Կորիւն, էջ 13—14։

[2] Ղազարայ յաւելուածը։ Հոս գրուած թուականը Փարպեցւոյ անձնական կարկատանքն է եւ սխալ. Հայաստան նոյն ժամանակ թագաւոր չունէր։

եղբարց, եւ ընկալեալ զկերպարանս վանականութեան՝ լինէր ընտիր յամենայնի եւ երեւելի»[1]։

Ասոր վրայ կը սկսի Կորիւն ստորագրել Մաշթոցի վանական կեանքը։ Առաքինութեան մէջ բաւականաչափ մարզուելէն ետքը, կը նուիրէ ինքզինքը Մաշթոց քարոզութեան, եւ իւր առաջին քայլերը կ'ուղղէ դէպի Գողթն գաւառը, ուր հեթանոսութիւնը տակաւին հաստատուն արմատներ ունէր։ Բայց «երանելոյն վաղվաղակի զաւետարանական արուեստն ի մէջ առեալ, ձեռն արկանէր զգաւառովն հանդերձ միամիտ սատարութեամբ իշխանին (Գողթան), գերեալ զամենեսեան ի հայրենեաց աւանդելոց, եւ ի սատանայական դիւապաշտ սպասաւորութենէն՝ ի հնազանդութիւն Քրիստոսի մատուցանէր։

Եւ յորժամ ի նոսա զբանն կենաց սերմանեալ, յայտնի իսկ բնակչաց գաւառին՝ նշանք մեծամեծք երեւէին, կերպակերպ նմանութեամբ դիւացն փախստական լինելով, անկանէին ի կողմանս Մարաց[2]։ Նոյնպէս առաւել հոգ ի մտի արկանէր ընդհանրականս սփոփելով, եւ առաւել յաղաւթս մշտնջենամռունչս, եւ բազկատարած պաղատանս առ Աստուած, եւ արտասուս անդադարս. զմտաւ ածելով զառաքելականն, եւ ասէր հոգալով «Տրտմութիւն է ինձ եւ անպակաս ցաւք սրտի իմոյ, վասն եղբարց իմոց եւ ազգականաց» (Հռովմ. Թ. 2, 3)։

Եւ այնպէս տրտմական հոգովք պաշարեալ եւ թակարդապատեալ եւ անկեալ ի ծուփս խորհրդոց, եթէ որպիսի՛ արդեւք ելս իրացն գտանիցէ։ Եւ իբրեւ աւուրս բազումս անդէն ի նմին դեգերէր, յարուցեալ այնուհետեւ հասանէր առ

---

1 Ղազար Փարպեցի, գլ. 10, էջ 37–38։

2 Նախիջեւան՝ Խրամ եւ Խոշակունիք աւաններու հետ։

սուրբ կաթուղիկոսն Հայոց Մեծաց, որոյ անունն ճանաչէր Սահակ, զոր պատրաստական գտանէր նմին փութոյ հաւանեալ։ Եւ միանգամայն յաւժարութեամբ գումարեալ հանդերձ աղաւթիւք մեծովք առ Աստուած կանխէին, վասն ամենայն ոգւոց քրիստոսաբեր փրկութեանն հասանելոյ. եւ զայն առնէին աւուրս բազումս։ Ապա ելանէր նոցա պարգեւական յամենաբարին Աստուծոյ ժողովել զաշխարհահոգ խորհուրդն երանելի միաբանելոցն, եւ գիւտ նշանագրոյ Հայաստան ազգին հաստատել[1]. բազում հարց փորձի եւ քննութեան զանձինս պարապեցուցեալ, եւ բազում աշխատութեանց համբերեալ, ազդ առնէին ապա եւ զկանխագոյն խնդրելին իւրեանց թագաւորին Հայոց, որոյ անուն կոչէր Վռամշապուհ։

Յայնժամ պատմէր նոցա արքայն վասն առն ուրումն ասորւոյ եպիսկոպոսի ազնուականի՝ Դանիէլ անուն կոչեցելոյ, որոյ յանկարծ ուրեմն նշանագիրս աղփաբետաց հայերէն լեզուի (տեսեալ)[2]։ Եւ իբրեւ պատմեցաւ նոցա յարքայէ վասն (հայերէն) գրելոյն ի Դանիէլէ, յաւժարեցին զարքայ՝ փոյթ առնել վասն պիտոյիցն այնոցիկ։ Եւ նա առաքէր զոմն Վահրիճ անուն հրովարտակաւք առ այր մի երէց, որոյ անուն Հաբել կոչէին, որ էր մերձաւոր Դանիէլի ասորւոյ եպիսկոպոսի։

Իսկ Հաբելին զայն լուեալ, փութանակի հասանէր առ Դանիէլն, եւ նախ ինքն տեղեկանայր ի Դանիէլէ նշանագրոյն, եւ ապա առեալ ի նմանէ առաքէր (զնշանագիրն) առ արքայն յերկիրն Հայոց. ի հինգերորդի ամի թագաւորութեան նորա ի նա հասուցանէր։ Իսկ արքային հանդերձ միաբան սրբովն Սահակաւ եւ Մաշթոցիւ՝ ընկալեալ զնշա-

---

[1] Տես էջ 22։

[2] “Որոյ յանկարծ ուրեմն նշանագիրս աղփաբետաց հայերէն լեզուի„. բայց կը պակսի. թերեւս աւելցընելու է «տեսեալ». տես վարը։

նագիրսն ի Հաբելէն, ուրախ լինէին։ Ապա առեալ երանելի հոգաբարձուացն զյանկարծագիւտն, խնդրէին հայցէին եւս յարքայէն մանկունս մատաղս, որով զնշանագիրսն (ի կիր) մարթեսցեն (արկանել)[1]։ Եւ յորժամ բազումք ի նոցանէ տեղեկանային․ ապա հրաման տայր ամենայն ուրեք նովին (նշանագրով) կրթել․ որով եւ յաստիճան իսկ վարդապետութեան գեղեցիկ երանելին հասանէր․ եւ իբրեւ ամս երկու կարգեալ զվարդապետութիւն իւր, եւ նովին նշանագրովք տանէր„[2]։

Կորեան այս տեղեկութեան հետ Փարպեցւոյ պատմածները համեմատութեան դնելէ յառաջ՝ պէտք եմ քանի մը խօսքով կէտի մը մէջ արդարացընել իմ թարգմանութիւնս։ Ես գիրս նշանագրոյ հայաստան ազգին հասանել նախադասութիւնը (էջ 16, 23—24, Վենետ. 1894) կարելի չէ թարգմանել, որ յայտնապէս խորհուրդն բառին բացայայտիչն ըլլալ կը թուի․ պէտք է կամ Ես-ը է փոխելով թարգմանել zu einer Buchstabenschrift des Volkes Armeniens zu gelangen (է գիրս նշանագրոյ հայաստան ազգին հասանել) կամ լաւագոյնս հասանել-ը կարդալ հաստատել եւ ջնջել Ես-ը։ Բայց աստի Կորեան 1883ի տպագրութիւնը սխալ կիտադրութիւն մը ունէր, այսինքն Եղուում հարց ջորջէն նախընթաց նախադասութեան կու տար, որ սակայն 1894ի հրատարակութեան մէջ ուղղագրուած է։

Փարպեցի Կորեան խօսքերն բազմապատիկ կերպով կը լուսաբանէ եւ մեզի կը ներկայացընէ այն դժուարութիւնները, որոնց դէմ պէտք էին մաքառիլ հայ հոգեւորականները․ կը պատմէ․

“Եւ այսպէս բազմաժամանակեայ մտածութիւնն երանելւոյ առն Մաշտոցի ընկալեալ յամե-

---

[1] Բայր կը պակսի։

[3] Կորիւն, էջ 15—17։

նախնամ մարդասիրէն Աստուծոյ՝ զաւրացոյց զնա Հոգւով ողորմութեան իւրոյ։ Քանզի հոգացեալ յարաժամ տրտմէր երանելի այրն Մաշտոց, տեսանելով զմեծ ջանն եւ զաշխատութիւնս ծախս մանկանցն Հայաստան աշխարհի. որք բազում նեղութեամբ եւ հեռագնաց ճանապարհաւք եւ բազմաժամանակեայ դեգերմամբ մաշէին զաւուրս իւրեանց ի դպրոցս ասորի գիտութեան։ Քանզի պաշտաւն եկեղեցւոյ եւ կարդացմունք գրոց ասորի լեզուամբ վարէին ի վանորայս եւ յեկեղեցիս հայաստան ժողովրդոց. յորմէ ոչինչ էին կարող լսել եւ աւգտել ժողովուրդք այսպիսի մեծ աշխարհի, եւ լինէր պաշտաւնէիցն աշխատութիւն եւ ժողովրդոցն անշահութիւն յանլսութենէ լեզուին ասորւոյ։

Զայս ի բազում ժամանակս զմտաւ ածեալ երանելի առնն Մաշտոցի, եւ փղձկացեալ յանձն իւր, մանաւանդ թէ գո՞ն նշանագիրք հայերէն լեզուոյս, որով հնար է՝ ինքեան յայնիս, եւ ոչ մարդացածոյ բարբառով, շահել զոգիս արանց եւ կանանց առ հաւատս յամենայն եկեղեցիս բազմութեանն։ Զաւրացեալ ի սուրբ Հոգւոյն յորդորմամբ եւ եկեալ առ սուրբ կաթողիկոսն Հայոց Սահակ՝ զեկուցանէր նմա զիւրոյ բազմաժամանակեայ մտածութեան զխնդիրն, եւ ընկալեալ ի նմանէ քաջալերութեան աւետիս, թէ "Զաւրացեալ ոգինդ կաց, առեալ ընդ քեզ եւ այլ արս աւգնականս ի քահանայից՝ զոր ես պատուիրեմ. եւ որ ախորժանայ է կարգել զհեթանոսաց՝ բերեալ առ ի ուղղեմ զայն. քանզի յոյժ դիւրին է գիտել կրոնդ զոր հայցես։ Բայց նախ արժան է մեզ զգացուցանել թագաւորին զպէտս այսպիսի մեծ եւ կարեւոր խնդրոյ. վասն որոյ եւ քան զաւուրս ինչ յառաջ ոչ բազումս, առեալ բանք յեկեղեցւոջ յաղագս կարաւտութեան այդպիսի պիտոյից՝ ասացեալ է ուրումն ցարքայ, թէ տեսի նշանագիրս հայերէն առ ումեմն եպիսկոպոսի ի գեւղ միում[1] եւ թա-

[1] Ղազար այսպէս կը նշանակէ Կորեան խօսքերը,

գաւորն յիշէր[1] զասացեալսն, քանզի եւ ինձ նա պատմեաց»։

Եւ մտեալ սրբոյ կաթողիկոսին Հայոց Սահակայ հանդերձ երանելեաւն Մաշտոցիւ առ թագաւորն Վռամշապուհ եւ իմացուցեալ նմա զպէտս իրացն՝ յիշեաց եւ ինքն թագաւորն զխաւսեցեալն վանականին վասն նորին իրացն ընդ նմա, զոր եւ նորա պատմեալ ուրախացոյց։ Եւ նոցա լուեալ զայս. ի թագաւորէն՝ փութացուցանէին զնա ասելով, թէ «Ճեպեա՛ յաղագս մեծ եւ ազատաբեր աշխարհիս Հայոց գիւտիս այսորիկ՝ ի ժամանակս քո, որ շատ աւելի առ յապայսն բերէ քեզ շահ, յիշատակ անմոռաց եւ ազգուտ երկնաւոր վայելից, քան զիշխանութիւն թագաւորութեանդ քո, եւ կամ որպէս յառաջ քան զքեզ նախնիքն քո էին յազգէն Արշակունեաց»։ Եւ թագաւորին լուեալ զայս եւ խնդալից եղեալ՝ ետ փառս Աստուծոյ, որ ի ժամանակս թագաւորութեան նորա զայսպիսի հոգեւոր կենաց փափաք ժառանգեաց[2] յաշխարհիս Հայոց։

Վաղվաղակի ստիպով առաքեալ դեսպան զՎահրիճ ոմն անուն կոչեցեալ ի ծնողաց իւրոց հանդերձ հրովարտակաւ առ այր մի երէց Հաբել անուն, որոյ ասացեալ էր յառաջագոյն ցարքայ, որ եւ մերձաւոր էր առն բարեպաշտի Դանիէլի եպիսկոպոսի, առ որում նշանագիրքն հայերէն կային։ Եւ երանելւոյն Հաբելի ընկալեալ զհրովարտակն ի Վահրիճէ եւ լուեալ զիրսն՝ փութանակի հասանէր առ սքանչելի եպիսկոպոսն Դանիէլ։ Եւ նախ անդէն ի նմին Դանիէլէ ինքն տեղեկանայր զկարգ նշանագրացն, եւ առեալ ի նմանէ առ թագաւորն եւ առ սուրբ հայրապետն Հայոց Սահակ

---

էջ 175—176, «որոյ յանկարծ ուրումն (տեսեալ) նշանագիրս աղփաբետաց հայերէն լեզուի»։

[1] Langlois II, 265, ապառնի կր թարգմանէ։

[2] Կր ապառուէր «ղարբոյյ»։

եւ առ երանելին Մաշտոց հասուցանէր։ Իսկ արքային Հայոց սուրբ կաթողիկոսաւն Սահակաւ եւ երանելեաւն Մաշտոցիւ ընկալեալ զնշանագիրսն ի Հաբելէ՝ ուրախ լինէին»[1]։

Կորեան պատմածին համեմատ ըստ այսմ հայ լեզուի համար յարմար այբուբենք մը յօրինելու եւ անոր օգնութեամբ Աւետարանը նաեւ անուսներու դիւրամատչելի ընելու ջանաջանքը՝ Մաշթոցի եւ Սահակայ հասարակաց արդիւնքն էր։ Սոյն մտածութիւնը սակայն իրենցմէ յառաջ արդէն Դանիէլ ասորի եպիսկոպոսի ձեռքով իրագործուած էր, այս պատճառաւ աստ եւ այժմ Դանիէլի գիւտը պարզապէս փոխ առնլով գոհ եղան։

Ղազար ընդհանրապէս քայլ առ քայլ կը հետեւի Կորեան, զոր միայն թէ կը խաթարէ երբ անոր բերանը կը դնէ անընդունելի վրիպակ մը. Ղազարի ըսածին նայելով՝ հայերէն նշանագիր հնարելու մտածութիւնը կը յղանայ միայն Մաշթոց, եւ երբ նոյնը կը հաղորդէ Սահակ կաթողիկոսին՝ Սահակ կ'ընդգրկէ զայն անմիջապէս։ Կը տեսնուի սակայն, որ Սահակ դանիէլեան գիւտին ծանօթ էր արդէն, բայց այս ծանօթութիւնը առիթ չէր եղած իրեն՝ իրին միջամուխ ըլլալու։ Այս հակասութիւնը այնչափ աւելի աչքի կը զարնէ, որչափ Ղազար դանիէլեան նշանագրերու կազմակերպութեան մէջ գլխաւոր արդիւնքը, ինչպէս պիտի տեսնենք, Սահակայ կը վերագրէ։

Դանիէլի գիւտին փոխառութեամբը միայն թէ հայ այբուբենքի յօրինումը դեռ աւարտած չէր ամբողջովին, շատ շուտ մէջտեղ ելան անյարմարութիւններ, որով ստիպուեցաւ Մաշթոց ամէն կողմանէ գոհացուցիչ այբուբենք մը կազմելու համար վերստին գործքի սկսիլ, եւ այս անգամ Մաշթոցի ճիգերը պսակուեցան լիուլի արդիւնք-

[1] Ղազար, էջ 39—43, 18։

ներով: Բայց թէ իրն ինչպէս ի գլուխ ելած էր՝ այս մասին յետոյ պայծառ գաղափար չկար, եւ արդէն Կորեան քով իսկ դէպքերու մասին երկու տարբեր տարբեր տեղեկութիւններ անյարմար կերպով է մի-հիւսուած կը գտնուին, որոնց երկուքն ալ յայնմ կը միաբանին իրարու հետ, թէ գիւտը Սամոսատական գաւառի մէջ կատարուած էր: Մեր ձեռքն հասած բնագրին անկապակցութեան շնորհիւ՝ դիւրաւ պիտի յաջողինք կրկին տեղեկութիւնները վերակազմել:

Տեղեկութիւններէն մին, զոր Աով կը նշանակեմ, այսպէս ունի.

Ա

Իսկ իբրեւ ի վերայ հասեալ թէ չեն բաւական նշանագիրքն՝ ողջ ածել զսիւղոբայս (= συλλαβάς) եւ զկապս Հայերէն լեզուոյն, մանաւանդ զի եւ նշանագիրքն էին յայլոց դպրութեանց թաղեալք եւ յարուցեալք դիպեցան, ||

Բ

Յետ այնորիկ դարձեալ կրկին անգամ ի նոյն հոգս դառնային, եւ նմին ելս խնդրէին ժամանակս ինչ: Վասն որոյ առեալ Երանելոյն Մաշթոցի դաս մի մանկտւոյ հրամանաւ արքայի, եւ միաբանութեամբ սրբոյն Սահակայ, եւ հրաժարեալք ի միմեանց համբուրիւ սրբութեանն՝ խաղայր գնայր ի հինգերորդ ամի Վռամշապհոյ արքային Հայոց[1], եւ երթեալ

[1] Այս թուականին, որ կը հաստատուի նաեւ այնու թէ Մաշթոց Վռամշապուհ թագաւորին վեցերորդ տարին Ասորիքէն (Միջագետքէն) Նոր Քաղաք վերադարձած ըլլայ (էջ 20), հակասական է նախկին տեղեկութիւնը, էջ 22, որուն համաձայն Մաշթոց գրեթէ երկու տարի ուսուցիչ կ'ըլլայ եւ կը գոհանայ դանիէլեան նշանագրերով: Այս պատճառաւ վերջին հատածիս մէջ անպատճառ վրիպակ մը գոյութիւն պիտի

հասանէր ի կողմանս Արամի՝ ի քաղաքս երկուց Ասոր(ւ)ոց (Միջագետաց) որոց առաջինն Եդեսիա (Եդեսա) կոչի, եւ երկրորդն Ամիդ անուն։ Ընդդէմ լինէր սուրբ եպիսկոպոսացն. որոց առաջնոյն Բաբիլաս[1] անուն եւ երկրորդին Ակակիոս. հանդերձ կղերականաւքն եւ իշխանաւքն քաղաքին պատահեալ, եւ բազում մեծարանս ցուցեալ հասելոցն, ընդունէին (զնոսա) հոգաբարձութեամբ, ըստ Քրիստոսի անուանելոցն կարգի։

Իսկ աշակերտասէրն վարդապետին՝ զտարեալն ընդ իւր յերկուս բաժանեալ, զոմանս յասորի դպրութիւնն կարգէր եւ զոմանս (ի) յունական դպրութիւնն։ ||

---

ունենայ, եթէ երբեք՝ [illegible] հատուածը՝ [illegible] նախորդ յարաբերական նախադասութեան իբրեւ լուսանցքի մեկնութիւն չընդունինք։ Այս պարագայիս մէջ այն երկու տարիները Վ. ռամշապհոյ հինգերորդ եւ վեցերորդ տարիներուն պէտք կ՚ըլլայ վերագրել, որոնց մէջ աղփաբետներու գիւտը կատարուեցաւ։ Ցամենայն դէպս Մաշթոց, Կորեան պատմածին համաձայն, Դանիէլի գիրն ընդունած տարին (Վռամշահոյ հինդերորդ տարին) Միջագետք ճամբայ ելաւ, որ առիթ տուաւ նոյն գրերուն կատարելագործման։

1 Անուանս մասին յետոյ։

անտի ի սամուսատական քաղաքն գումարէր եւ նորա իւրովք հաւաստաւք զառվորականն առաջի եդեալ զաղաւթս եւ զտքնութիւնս եւ զպաղատանս արտասուալից(ս), զխստամբերութիւնս, զհոգս զաշխար[հ]ահեծս, յիշելով զասացեալսն մարգարէին, եթէ, "յորժամ հեծեծեցես, յայնժամ կեցցես[1]":

Եւ այնպէս բազում աշխատութեանց համբերեալ վասն իւրոյ ազգին բարեաց ինչ աւճան գտանելոյ[2]: Որում պարգեւէր իսկ վիճակ յամենաշնորհողէն Աստուծոյ. հայրական չափուն[3] ծնեալ ծնունդս նորոգ եւ աքանչելի սուրբ աջոմն[4] իւրով (Մաշթոցի), նշանագիր հայերէն լեզուին:

Եւ ապա հրաժարեալ յեպիսկոպոսացն սրբոց, հանդերձաւգնականաւք իւրովք իջանէր ի քաղաքն սամոսատացւոց, յորում մեծապատիւ իսկ յեպիսկոպոսէն եւ յեկեղեցւոյն մեծարեալ լինէր: Եւ անդէն ի նմին քաղաքի գրիչ ոմն հելլենական դպրութեան Հռոփանոս անուն գտեալ, որով զամենայն ընտրութիւնս նշանագրոյն՝ զնրբագոյնսն զկարճն եւ զերկայնն, զառանձինն եւ զկրկնաւորն, միանգամայն յաւրինեալ եւ յանկուցեալ[5], ի թարգմանութիւն դառնայրն հանդերձ արամբ երկուք, աշակերտաւքն իւրովք. որոյ առաջնոյն Յովհան անուն կոչէին, յեկեղեաց գաւառէն,

---

[1] Եսայի Լ, 15:

[2] Այսինքն՝ իւր ամբողջ ժողովուրդը փրկութեան մասնակից ընելու:

[3] Կը թարգմանուի in der Weise eines Vaters (հօր մը պէս):

[4] Զայս սխալ հասկնալով Սուտ-Մովսէս՝ կը վերագրէ Աստուծոյ:

[5] Durch welchen er sämtliche feinste Unterschiede der Schriftzeichen, den kurzen und langen, die eigentlichen und doppelten, allzumal anordnete und einreihte.

*Եւ անդ փաղփաղակի նշանակեալ անուանեալ եւ կարգեալ, յաւրինէր սիղոբայիւք եւ կապաւք[1]:*

*եւ երկրորդին Յովսէփ անուն՝ ի պաղանական տանէն:*

*Եւ եղեւ սկիզբն նախ յԱռակացն Սողոմոնի, որ իսկզբանն իսկ ծանաւթս իմաստութեանն ընծայեցուցանէ լինել, ասելով՝ եթէ «Ճանաչել զիմաստութիւն եւ զխրատ, իմանալ զբանս հանճարոյ[2]»: Որ եւ գրեցաւ ձեռամբն այնորիկ գրչի. հանդերձ ուսուցանելով մանկունս գրիչս նմին դպրութեան[3]:*

*Պատմութեանս հեղինակին համար ըստ այսմ Մաշթոցի մտաւորական ծնունդն էին հայ նշանագրերը, որոնք կը նկատուէին աստուածային լուսաւորութեան եզական մէկ շնորհքը. ասով գիւտին մերձաւոր պարագաներու մասին յարուցանելի հետաքրքիր հարցերն ի յառաջագունէ կը դատապարտուին լռութեան. ընդհակառակն կարեւորութենէն զուրկ չէ դանիէլեան նշանագրերու որպիսութեանց նկատմամբ մեր այստեղէն քաղած հանած քիչն ալ, որուն համեմատ մասնաւորապէս խափանարարն այն հանգամանքն էր, որ Դանիէլի գրերն ալ ուրիշ եւ նոյն իսկ հնացած գրերու տեսակներէն փոխ առած էին նշանագրեր, որոնք բնականապէս հիմ կազմող աղփաբետքի ուղղութեան հետ չէին համաձայնիր. այս վերջին աղփաբետքի*

---

[1] Կորիւն, էջ 18, 1–5, 24–19, 7:
[2] Առակաց, Ա. 2:
[3] Կորիւն, էջ 18, 4–24. 19, 8–20, 2:

մասին դժբախտաբար բոլորովին մթութեան մէջ պիտի մնանք։

Երկրորդ տեղեկութիւնը աւելի թանձրացեալ նկարագիր ունի, թէեւ հոս ալ շատ անգամ անորոշ է բացատրութեան եղանակը։

(Տես, էջ 26—29 երկրորդ սիւնակ)։

Այն խնդիրը, որ այժմ Հայ եկեղեցւոյ կրկին ջահերը կը զբաղցընէր եւ որուն վրայ մասնակի տեղեկութիւն չի տար մեզի բնագիրը, կրնանք եզրակացընել սա խօսքերէն թէ Մաշթոց իւր երկու աշակերտներովը ի թարգմանութիւն դարձաւ եւ այն, ինչպէս ցոյց կու տայ կապակցութիւնը, ի թարգմանութիւն Ս. Գրոց։ Մաշթոցի թարգմանչական այսպիսի գործունէութեան մը մասին թէեւ յայտնապէս խօսուած չէ նախընթաց մասերուն մէջ, այսու հանդերձ բնական է որ նոր գրերու գործածութեան համար անհրաժեշտ պէտք էին բնագիրներ, որոնք, ինչպէս իրին բնութիւնը կը պահանջէր, եկեղեցական աղօթքներն եւ ընթերցուածները կրնային ըլլալ, եւ որոնք պէտք էին նախ ասորերէնէ թարգմանուիլ։ Նման բնագիրներ թարգմանելու կը ստիպէր գործնական պէտքը. քիչ ետքը Ս. Գրոց ամբողջական թարգմանութեան պակասը չափազանց զգալի եղաւ. իսկ այսպիսի գործքի մը ոչ ոք ինքզինքը ատակ կը զգար Հայաստանի մէջ։ Կարելի էր յուսալ թէ այս գործոյն համար օգնութիւն կը գտնուի Միջագետք, եւ ի սկզբանէ անտի դիտուած էր թէ՛ ասորերէնէ եւ թէ՛ յունարէնէ թարգմանութիւններ կատարել։ Այս պատճառաւ երկու դասի բաժնեց Մաշթոց իւր աշակերտները, որոնցմէ մին ասորերէնի, միւսը յունարէնի պիտի պատրաստուէր։

Մաշթոցի Միջագետք ուղեւորութեան մեծ ու գլխաւոր նպատակին քով — տարակոյս չկայ որ այս միջոցին, որչափ ալ յայտնապէս յիշուած չէ, մեծ մտադրութիւն ուղղուած էր Ս. Գրոց ասո-

քերէն ձեռագիրներ եւ մեկնաբանական օժանդակ-միջոցներ ձեռք բերելու, եւ այս գործքին մէջ եպիսկոպոսներու ձեռնտուութիւնը մեծ արժէք ունէր — Սամոսատայի մէջ հելլէն գեղագրի մը օժանդակութեամբ ի գլուխ ելած Հայ աղփաբետքի նորագոյն բարեձեւութիւնը՝ ստորակարգ նշանութիւն ունեցող պատահար մը միայն կը մնայ:

Տեղեկութեանս իմաստը թոյլ կու տայ մեզի այժմ իսկ ստուգել գոնէ այն փոփոխութիւններէ մին, զոր Մաշթոց հետը բերած աղփաբետներուն վրայ ըրաւ. —ոնչէնն եւ կըշնո–որ նշանագրերով նախ պէտք ենք հասկնալ կրկին l եւ r ները ինչպէս նաեւ – եւ ɂ, որոնցմէ – եւ ɂ միայն սկզբնատառ կը կազմեն: Թէ ղ եւ ր՝ ղ ի եւ – ի համեմատութեամբ "բուն" ձայն կամ նշանագիր նկատուած են, կ'ապացուցուի նաեւ այնու, որ օտար բառերու եւ անուանց սկզբնատառ l եւ r գրերուն տառադարձութեան մէջ երկու ձեւերն ալ հաւասար գործածական են. Նաեւ աղփաբետքի մէջ յոյն λ եւ ρ տառերուն տեղը կը գրաւեն: կ–րճ եւ եըկ–յն նշանագրերով ընդհակառակն պիտի իմանանք անշուշտ ձայնաւոր նշանագրերը:

Նշանագրերը հիմ բռնելով՝ աղփաբետքի ծագումը ցուցընել փորձելէս յառաջ պէտք կը զգամ ընթերցողին առջեւը դնել ինչ որ Փարպեցի գանիէլեան գիւտին կատարելագործման մասին կը պատմէ:

Եւ այսպէս դիպեալ գիւտի նշանագրացն՝ ձեռն ի գործ արկանէր երանելին Մաշտոց, յերիւրելով զնա սուրբ հայրապետին Հայոց Սահակայ, դիւրահնար ճանապարհ՝[1] ցուցանելով կարգադրութեան գրենոյս եւ հեգենային ուղղաձայնութեան. տ–լով նմ– ––ննոկ–նս ե– –յլ –րս ջ–նիջ–ն– ե– մ–ո–

[1] Տես, վերը էջ 21:

ցեալ է թարգմանչացն Հայոց, որք էին աշակերտ մեծ Նոցա, որպէս երանելւոյն Մաշտոցի, մերձաւորեալ է յունարէն հելլէնայինն. որում առաջնոյն անուն էր Յոհան՝ ի գաւառէն Եկեղեաց, եւ Երկրորդին Յովսէփ՝ ի Պաղանական տանէն եւ երրորդին Տէր՝ ի Խորձենոյ, եւ չորրորդին Մուշէ՝ ի Տարաւնոյ։ Որոց ուգնելով զօրէր երանելին Մաշտոց, հանդիպեցուցանէր զհայերէն ածութթայսն ըստ կարգման մելովքայիցն Յունաց, ստէպ հարցմամբ եւ ուսանելով ի սուրբ կաթողիկոսէն Սահակայ զածութթայիցն գաղափար, ըստ անսայթաքութեան յունին։ Վասն զի ոչ լինէին բաւական ի վճարել անսխալ ուղղակի, առանց առաջնորդելոյ նոցա սրբոյ հայրապետին Սահակայ որ յոյժ առլցեալ անցուցանէր վարժիւք զբազում գիտնովքն Յունաց, եղեալ կատարելապէս հմուտ երգողական տառիցն եւ հռետորական յորդասաց յայտաբանութեան, եւս առաւել տեղեկացեալ փիլիսոփայական արուեստիցն ցուցանիւր։

Կարգեալ այնուհետեւ, Փրկչին առաջնորդութեամբ, զգիր գրենոյն հայերէնի եւ հելլենացին ուղղեալ յաւրինուածս՝ ցանկային կարգել դպրոցս եւ ուսուցանել բազմութիւն մանկտւոյ. քանզի ամենայն անձն յորդորեալ փափագէր յուսումն հայերէն գիտութեան, որպէս ի խաւարէն, յասորի տանջանացն, զերծեալք ի լոյս՝ խնդային։ Բայց տարակուսեալք կասէին յանչքութենէ Գրոց սրբոց. քանզի ոչ գոյին դեռ եւս հայերէն լողութեամբ սուրբ կտակարանք եկեղեցւոյ։ Եւ երանելին Մաշտոց եւ որ ընդ նմա պատուական քահանայքն էին՝ ոչ զաւրէին համարձակել յայսպիսի սաստիկ եւ կարեւոր գործ, թարգմանել դիրս ի յոյն լեզուոյն ի հայ բարբառս. վասն զի ոչ ինչ էին այնպէս տեղեակ գիտնապէս հրահանգի յունարէն ուսմանն„[1]։

---

[1] Դ—ղ—ր, էջ 45—48։

Այս տեղեկութիւնը թոյլ կու տայ մեզի ճանչնալ առ. նուազն թէ Ղազարի կարծեօք գլխաւորաբար ինչ բանի մէջ կը կայանային Մաշթոցի Դանիելեան գրերու վրայ կատարած բարեփոխութիւնները. 1. յունարէնի վանկային կարգին նմանելու եւ 2. տառանշաններուն յունարէնի նման անփոփոխականութիւնը (անայլթաքութիւնը) ներմուծելու մէջ: Եւ իրաւամբ Հայերէնի, մասնաւորապէս բառի մը սկիզբը, բազմաթիւ բաղաձայններու խճողուելով դժուարին ընթերցումը յունարէն ձայնաւորներու ներմուծմամբը կրնար դիւրընալ: Սեմական լեզուները բառի մը սկիզբն առ հասարակ բաղաձայն չունին, իսկ բառամիջին երկու բաղաձայններէ բաղկացած խումբ ունին. միջին իրանեան լեզուն ալ նոյնպէս կը ջանար հին իրանեան բազմաբաղաձայն խմբերը պարզել ու հին երկբարբառները միաբարբառներու վերածել, այնպէս որ միջին իրաներէնի համար միայն ի հարկին կրնար բաւական համարուիլ արամէական բաղաձայնային աղփաբետը, որ ձայնաւորները բոլորովին անկատար կերպով մատնանիշ ընելու հնարաւորութիւնը միայն կ'ընծայէր: Յունարէնն ընդ հակառակն գէթ երեք բաղաձայնէ, բառի մը սկիզբն երկու բաղաձայնէ բաղկացեալ խմբեր պահած էր, որով ամէնէն աւելի իբր օրինակ կրնար ծառայել Հայերէն գրերու վերանորոգութեան: Զ[illegible]յէյն ֆ[illegible]ֆոր ըստ [illegible] յ[illegible]նէն բացատրութեան իմաստը սա է թէ Հայերէն սովորական աղփաբետքին տուեցաւ Մնագրի նկարագիր՝ [illegible] կցման: Զայս կ'ապացուցանեն արդէն յունարէնէ փոխառեալ գրերն ալ, եւ գլխաւորաբար ֆ տառը: Յունարէնի անփոփոխականութեան (անայլթաքութեան) ներմուծումը իբրեւ Մաշթոցի մէկ արդիւնքը գովաբանուիլը կ'ենթադրէ, թէ Դանիելի աղփաբետքն եւ սոր նախագաղափար օրի-

նակը շղագիր մըն էր՝ կցեալ նշանագրերով, որ բազմապիսի շփոթութիւններու առիթ եղած էր։ Դարձեալ Փարպեցւոյ տուած տեղեկութեններէն կարելի է թերեւս նաեւ մակաբերել — որուն ամէն մարդ ստիպուած է համոզուիլ եթէ հայ եւ յոյն գլխագրերն իրարու հետ համեմատէ — թէ հայ գրերու նօտրագրման մէջ յոյն աղփաբետը իբրեւ օրինակ ծառայած է եւ նաեւ աշխատուած է հայ գրերու ձեւն ըստ կարելւոյն մերձեցընել յունին։ Եւ իրապէս ալ առաջին արդիւնքը կը վերագրուի Մաշթոցի՝ հայ քահանաներու Սահակ հայրապետին ուղղած բանախօսութեան մէջ, ուր թագաւորին ու աւագանւոյ անուամբ կը հրաւիրուի Սահակ ձեռնարկել Ս. Գրոց յունարէնէ թարգմանութեան. "մեք որ կամքս առաջի քո, հանդերձ երանելեաւն Մաշթոցիւ, զոր զարթոյց աստուածայինն շնորհ ի ցանկութիւնս այս՝ նորոգել զվաղընջուցն գրեալ շարագիրս տառիցն, զորս ոչ ոք երբեք էր հոգացեալ արկանել ի կիր[1], այլ սորի մեծաջան եւ անաւգուտ ուսմամբքն աշխատեալք յոխորտ. յորոց բազմութիւնք ժողովրդոց ունայնք եւ թափուրք հրաժարեալք գնային յեկեղեցւոյն. եւ ուսուցիչքն հանելով յոգւոց եւ հառաչելով՝ զղջանային պնոտի ջանն իւրեանց, յորում ոչ զոք յաւսումնասէր ժողովելոյն տեսանէին աւգտեալ ի վարդապետութենէն հոգեւոր խրատուցն, որ է կերակուր եւ պարարումն իմաստնախնդիր անձանց, մինչեւ գտաւ գիր եւ աջողելով Քրիստոսի եկեալ յաճումն տակաւին պաւրանայ[2]"։

Մաշթոցի Ասորիք՝ այսինքն Միջագետք ուղեգնացութիւնը ու յարակից պարագաները կը

---

[1] Կարգել զվաղնջուց գրեալ շարագիրս տառիցն" անուանած է Խորենացին, Գ. 52, էջ 245 "կարգել ըստ ձեւոյ աւրինակի յունականին զվաղնջուց գրեալ նշանագիր (շարագիր) տառից"։

[2] Ղազար, էջ 487 - 49. 21։

լու է Ղազար ամբողջովին։ Այս՝ դիտումնաւոր փոփոխութիւն մըն է, որ կապ ունի հարկաւ Ղազարայ ցոյց տուած այն չափազանց ջանքին հետ, որով ոչ միայն Ս. Գրոց Թարգմանութեան, այլ նաեւ նոյն իսկ Հայ գրերու կազմակերպութեան գլխաւոր արդիւնքը կը դիտէ վերագրել Սահակայ, որով յափշտակուած է — այս պատճառաւ ալ, ինչպէս բնական է, դէպքիս հանդիսավայրը հարկ էր փոխադրել Հայաստան — եւ կողոպտել Մաշթոցէն փառաց պսակը, որուն արդեամբք արժանացած էր։ Ղազար արժանի է սաստիկ կշտամբանաց այս փորձին համար, զոր պէտք ենք իբրեւ պատմական անպատկառ խարդախութիւն մը մատնանիշ ընել. բարեբախտաբար այս փորձը Կորեան տուած հարազատ տեղեկութեան պահուած ըլլալուն շնորհիւ ի դերեւ ելած է։ Կ—րգել ղվ—ղՁ—ցն ֆրե—լ շ—ր—գէր— դ——ւցն, ղ—ր— —ւ ——ր——+ էր ո—ֆ—ցե—լ —րկ—նել է կեր խօսքերը կ'երեւայ թէ կ'ենթադրեն որ Մաշթոցէն յառաջ արդէն ասորերէնէ եւ յունարէնէ զատ Հայաստանի մէջ երբեմն գործածական եղած էր ուրիշ գիր մը. որովհետեւ Կորեան տեղեկութիւնք, որուն համար Ղազար ինքնին կ'ըսէ թէ իւր բանձներուն վստահելի աղբիւրն է, այս մասին բան մը չի պարունակեր, ուստի հաւանական է թէ Փարպեցւոյ այն բառը լոկ պարզաբանութիւն մը ըլլայ Կորեան հետեւեալ մութ խօսքերուն "մ—ն———ն— ղէ ե— ն—շ—ն—ֆէր—ն է—կ յ—յ—— —ղր——բե—ն— ր—ղէ—լ+ ե— յ—ր——ցե—լ+ —ֆէղեց—ն (Եզ 18, 3—4)։

Սուտ Մովսէս Խորենացւոյ պատմածը յառաջ պիտի բերեմ միայն իբրեւ զուարթարար միջնախաղ մը։ Թէ այս պատմուածն ո՛ եւ իցէ ինքնակայ կարեւորութիւն չի կրնար ունենալ՝ զայս շեշտելու հարկ չեմ տեսներ այլ եւս. այս պատմուածին շնորհիւ միայն թէ կրնանք շատ հետաքրքրական

ակնարկ մը ձգել հայ կղերական մտաւոր արուես-տանոցին վրայ։

Մովսէս կը պատմէ թէ ինչպէս Վահրիճ Հաբելի հետ, «քաջ հմտացեալ ի Դանիէլէ կարգեալ ըստ ձեւոյ օրինակի յունականին զվաղաճնջոց գտեալ նշանագիր տառից[1] եկեալ ետուն ցՄեծն Սահակ եւ Մեսրոպ։ Որոց ուսեալ, եւ թեւածե-լով ընդ նոսա տղայոց գամս սակաւս, տեղեկացեալ գիտացին՝ ոչ լինել բաւական այնու նշանագրաւք սոյգ հոլովել զհեգենայ բառից հայկականաց հագներգաբար մուրացածոյին այնուիկ գծա-գրութեամբ։

Զկնի այսորիկ ինքնին Մեսրոպ իջեալ ի Միջագետս՝ հանդերձ աշակերտաւք առ նոյն Դա-նիէլ, եւ ոչ աւելի ինչ գտեալ քան զառաջինն, անցանէ եւ յԵդեսիայ առ Պղատոն[2] ոմն ճար-տարասան հեթանոս՝ իշխան դիւանին։ Եւ նորա խնդութեամբ ընկալեալ, եւ զոր ինչ միանգամ ի միտ առնոյր բան հայերէն յինքն առեալ, եւ շատ ջանացեալ եւ ոչ աւգտեալ, զտգիտութիւն խոս-տովանեաց հռետորն։ Եւ զայլ ոմն ասելով յոյժ հատու, վարդապետ իւր եղեալ յառաջագոյն, եւ ապա առեալ զճարտարացն գրեան[3] ի նոյն դիւանէն Եդեսեայ, եւ գնացեալ քրիստոնէու-թեան հաւատոց. որոյ անուն Եպիփանոս, զոր խնդրեալ գտցես լցուցանել զփափաքդ քո։

Յայնժամ Մեսրոպայ օգնականութիւն ի Բաբիլոսէ եպիսկոպոսէ գտեալ, եւ անցեալ ընդ Փիւնիկէ ի Սամոս դիմէ. քանզի Եպիփանու վճա-րելով զկենցաղս՝ թողեալ լինի աշակերտ մի անուանեալ Հռոփանոս, հրաշալի արուեստի

---

[1] Տես վերը, էջ 34, ծանօթ. 1։

[2] Երեք 22. եւ Փուրզեյ «Պղատոն»։

[3] Ա.Ս. օր. Տաշեան, «Հռետորական մատենա-գրութիւն»։

հելլէն գրչութեան[1], որ ի Սամոս էր միայնացեալ։ Առ. Նա երթեալ Մեսրոպայ, եւ յայսմ եւս անշահ մնացեալ, յաղաւթս ապաւինի, եւ տեսանէ ոչ ի քուն երազ եւ ոչ յարթնութեան տեսիլ, այլ ի սրտին գործարանի երեւութացեալ հոգւոյն աչաց թաթ ձեռին աջոյ՝ գրելով ի վերայ վիմի[2], զի որպէս ի ձեան վերջք գծին կուտեալ ունէր քարն[3]։ Եւ ոչ միայն երեւութացաւ, այլ եւ հանգամանք ամենայնին որպէս յաման ինչ ի միտս նորա հաւաքեցաւ։ Եւ յարուցեալ յաղաւթիցն, ստեղծ զնշանագիրս մեր՝ հանդերձ Հռոփանոսիւ կերպաձեւեալ զգիրն Մեսրոպայ առ ձեռն պատրաստ. փոխադրելով զհայերէն աթութայն ըստ անայթաքութեան սիւղաբայից հելլենացւոց[4]։ Եւ իսկոյն ի թարգմանութիւն ձեռն արկեալ, խորհրդաբար սկսանելով յԱռակաց, բովանդակ զքսան եւ երկու յայտնիսս եւ զնոր Կտակս յեղուլ ի Հայ բան, նաեւ աշակերտք նորա Յոհան Եկեղեցացին եւ Յովսէփ Պաղնացի. միանգամայն եւ զարուեստ գրչութեան ուսուցանել տալով իւրոց մանկագոյն աշակերտացն”[5]։

Այս վէպը բառական մուծուած է նաեւ Փարպեցւոյ այժմեան բնագրին մէջ. հոս ներմուծումն այնպէս ակնյայտնի է, որ անդրագոյն ցուցման չի կարօտիր. կը բաւէ միայն յիշատակել թէ գրերու հեղինակը այս տեղ՝ եւ միայն այս

---

[1] Այսպէս երեք օր. գրչութեան, V. գրչութեամբ։

[2] Ձեռագիր մը կը յաւելու, ա, է. ե, ը, է, ո. —։

[3] “Որպէս զհետս ի ձեան ընկալեալ քարն զկուտեալ գիծս”։

[4] “Զհայերէն աթութայն ըստ անայթաքութեան սիւղաբայից հելլենացւոց” կ'առնուի Փարպեցիէն, էջ 46 “զաթութայիցն գաղափար ըստ անայթաքութեան յունին”։

[5] Մովս. Խոր. Գ. 53, (հմմտ. վերը, էջ 33)։

տեղ կը կոչուի ոչ թէ Մաշթոց այլ Մեսրոպ[1], ինչպէս ունի Մովսէս։

Հարկ չեմ զգար մասնաւոր կերպով մտադիր ընելու այն հրաշքին, զոր Մովսէս ճարտարագէտ հնարամտութեամբ գիտցած է քաղել Կորեան "Հայրական լուսոյն ծնեալ ծնունդս նորոգ եւ ստանձեալ սուրբ ոգւոյն երրով, նշանագիրս հայերէն լեզուի" խօսքէն։ Ցատկապէս զուարճալի է սակայն այն կերպն ու եղանակը, որով Մովսէս Մեսրոպայ ուղեւորութեան վէպը կը հիւսէ։ Կորեան մեր առջեւ դրած Սամոսատացի Հռոփանոս գրիչը Խորենացւոյ գրչին տակ Եպիփանու աշակերտ կ'ըլլայ, որ իւր վարդապետին մահուանէն վերջ իբրեւ ճգնաւոր Սամոս առանձնացած կը ներկայացուի. կ'ըսուի թէ Եպիփանն ալ եղած ըլլայ յառաջ ուսուցիչ հեթանոս ճարտասան Պղատոնի, Եդեսիոյ դիւանին վերատեսչին, յետոյ ընդունած ըլլայ քրիստոնէութիւնը եւ Եդեսիոյ դիւանը պահուած "դճարտարացն գրեան" հետն առած. թէ որ կողմ այնուհետեւ ուղղած է իւր քայլերն՝ թէպէտ եւ յայտնապէս չի ծանուցուիր մեզի, սակայն ինչպէս ուղեգծէն կը տեսնուի, պէտք ենք զինքը փնտռել ի Փիւնիկէ կամ Արքիպեղագոսի կղզիներէն միոյն վրայ։ Բնաւ տարակոյս չի վերցըներ թէ Մովսէս հոս իւր աչքին առջեւն ունէր միայն եւ միայն Կոստանդիայի (Սաղամինայի՝ Կիպրոսի վրայ) Եպիփանոս եպիսկոպոսը (367է սկսեալ, †403),[2] որ Պաղեստինացի էր ծննդեամբ։ Եպիփանու գրոց մէջ տեսնուած հմտութիւնը՝ Մովսէսի կարծեօք՝ Եդեսիոյ դիւանէն միայն բանագողուած կրնար ըլլալ։ Թէ ինչպէս Խորենացի այս կարկատանքները կը հնարէ՝ կրնանք Փաւստոսի վրայ ակնարկ մը ձգելով իս-

---

[1] Թէ ինչպէս Ֆր. ՄԻՒԼԼԷՐ, WZKM. V, 37 հակառակ ենթադրութիւնը կ'ընէ, բոլորովին աւեղծուածային կը թուի ինծի։

կոյն իմանալ (Դպ. Ե. գլ. ԻԷ, էջ 221 (2)։ Բուղանդ կը յիշէ անապատաւոր Եպիփան մը, ծննդեամբ յոյն, որ կ'աշակերտէր Դանիէլ մեծ քորեպիսկոպոսին եւ Ներսէս Մեծի մահուանէ ետքը կու գայ կը բնակի Մամուշեղ գետին քով ի մեծ Ծոփս։

"Իբրեւ բազում կարգս ուղղութեան թողոյր ի գաւառն յայնոսիկ սուրբն Եպիփան, իսկ նա էառ ընդ իւր զաշակերտսն իւր արս միանձունս լեռնականս անապատականս, արս հինգ հարիւր, երթալ գնալ յերկիրն Յունաց։... Եւ ինքն չոգաւ եմուտ ի ծով մեծ, եւ նաւաւք անցին յանապատ ի կղզիս. եւ ունէր զկղզին զայն աւձից բազմութիւնք եւ էին յայնմ կղզւոջ բնակեալ աւձք, իժք եւ քարբք, բազում գազանք գաժանք թունաւորք։ Եւ եղեւ իբրեւ չոգան, եհաս սուրբն Եպիփան ի կղզին յայն, մերժեցան անտի գազանքն եւ թողին զկղզին եւ գնացին։ Եւ այնուհետեւ ոչ ինչ վնաս եղեւ նոցա ի կղզւոջն յայնմիկ, այլ բնակեցան անդ խաղաղութեամբ"։

Անապատ կղզին, ուր կը քաշուի միանձն Եփիփան, Հայ Կտեսիասի գաղափար կը ներշնչէ Հռոփանոս գրչի բնակավայր Սամոսատ քաղաքը Սամոսի փոխելու եւ Փաւստոսի՝ Եպիփանոսի մասին պատմածներն վերագրելու Հռոփանոսի, զոր եւ Եպիփանու աշակերտ կ'ընէ։ Իսկ թէ Եդեսիոյ դիւանին ամէն գիտութեանց շտեմարան ըլլալը՝ Մովսէսի մէկ գիւտն է, առ որ մենաշնորհի իրաւունք ունի, Գուտշմիդէն ետքը Կարրիէր ապացուցած է, ինչպէս յայտնի է։

Տեսնելէն ետքը թէ Մաշթոցի արժանիքն գլխաւորաբար կը կայանայ Դանիէլ եպիսկոպոսին գործածած[1] աղփաբետքին « եւ իցէ բարեփոխութեան վրայ, մեր խնդրոյն համար աւագ կարե-

[1] Տեղ մը չի յիշատակուիր թէ Դանիէլ նոյն աղփաբետքն անձամբ գտած ըլլայ, այլ միայն թէ նոյնով հայերէն կը գրէր։

ւորութիւն ունի յառաջուց գաղափար մը կազմել կարենալ, թէ ինչ տարիճանի հաւատարմութիւն պէտք ենք ենթադրել թէ ունին Մաշթոցեան գրերն իրենց նախանկար օրինակին հանդէպ։ Այս պարագային մէջ՝ Մաշթոցի փառաց երկրորդ գործը՝ վրական այբուբենքի ստեղծագործութիւնը՝ թանկագին նպաստ մը կը մատուցանէ մեզի իրօք. այս մասին Կորիւն կը պատմէ[1].

"Դարձեալ յետ ժամանակի ինչ՝ ընդ մէջ անցանելոյ, հոգ ի մտի արկանէր սիրելին Քրիստոսի՝ եւ վասն բարբարոսական կողմանն. եւ առնոյր կարգեալ[2] նշանագիրս վրացերէն լեզուին, ըստ շնորհեցելոյ նմա ի Տեառնէ։ Գրէր կարգէր եւ ուրինաւք յարդարէր, եւ առնոյր ընդ իւր զոմանս լաւագոյնս յաշակերտաց իւրոց, յարուցեալ գնայր իջանել ի կողմանս Վրաց. եւ երթեալ յանդիման լինէր թագաւորին՝ որում անուն էր Բակուր, եւ եպիսկոպոսի աշխարհին՝ Մովսէս։ Եւ առաւելագոյն հնազանդեալ նմա ըստ ուրինացն Աստուծոյ՝ թագաւորին եւ զաւրացն, հանդերձ ամենայն գաւառաւքն։ Եւ նորա զիւր արուեստն առաջի արկեալ՝ խրատէր յորդորելով. յորում եւ յանձն առեալ ամենեցուն զխնդրելին կատարել։ Եւ գտեալ պայր մի թարգմանն վրացերէն լեզուին, որ անուանեալ կոչէր Ջաղայ, այր գրագէտ եւ ճշմարտահաւատ. հրամանն տայր այնուհետեւ արքայն Վրաց՝ ի կողմանց կողմանց, եւ ի խառնաղանջ գաւառաց իշխանութեան իւրոյ՝ ժողովել մանկունս՝ տալ ի ձեռն վարդապետին։ Զոր առեալ՝ արկանէր ի բովս վարդապետութեանն[3], եւ հոգեւոր սիրոյն եռանդ-

---

[1] Էջ 25։
[2] "Կարգեալ" ընդունելութիւնը կրնայ ըլլալ։
[3] "Արկանէր ի բովս վարդապետութեանն" նախադասութիւնը պէտք է "եւ հոգեւոր սիրոյն եռանդմամբ" խօսքէն ետքը դնել։

մամբ՝ զաղտ եւ զժանգ չարաւահոտ դիւացն եւ զմնոտիագործ պաշտամանն ի բաց այնչափ անջատեալ ի հայրենեացն իւրեանց՝[1] եւ անյիշատակ ցուցանել, մինչեւ ասել՝ թէ «Մոռացայ զժողովուրդ իմ եւ զտուն հաւր իմոյ» (Սաղ. ԽԴ, 11)։

Եւ արդ գնոսա, որ յայնչափ ի մանաւոր եւ ի բաժանեալ լեզուացն ժողովեցան, միով աստուածաբարբառ պատգամաւքն մի ազգ կապեալ՝ փառաբանիչս[2] միոյ Աստուծոյ յաւրինէր. յորոց եւ իմ անարժանիս՝ եղեալ ի կարգ եպիսկոպոսութեան վիճակ, որոց առաջինն Սամուէլ անուն. այր սուրբ եւ բարեպաշտաւն՝ եպիսկոպոս կացեալ տանն արքունականի[3]»։

Պէտք ենք ընդունիլ թէ Կորիւն այս եղածներուն շատ մօտանց ծանօթ էր, բառ որում, ինչպէս ինքն իսկ անձամբ կը պատմէ, ինքն էր որ ի Վիրս եպիսկոպոս եղաւ։ Եւ սակայն Կորիւնի նշանագիրս վրացերէն լեզուին բոլոր շնորհեցելոյ նմա ի Տեառնէ ասութիւնը այնու միայն երկդիմի չէ, որովհետեւ յայտնապէս կը բացատրէ թէ վրական այբուբենը Աստուծմէ շնորհուած Հայերէն գրերու կաղապարին վրայէն կերտուեցաւ, իսկ թէ ինչ էր վրական գրերու հին կազմող այբուբենքը՝ այս մասին ընդհակառակն մեր հետաքրքրութիւնը չի գոհացըներ Կորեան տեղեկութիւնը։ Անկէ այսչափ միայն կրնանք եզրակացընել թէ նոյն սկզբնատարրը չէր կացուցաներ հայերէն այբուբենքը։ Որովհետեւ վրացերէնը՝ քանի մը դոյգն խոտորում ի բաց առնելով, նման Հայերէնի՝ միեւնոյն կնճռոտ ձայնական դրութիւնն ունի, ուստի Մաշթոցի ընելիքն ըլլալու էր պարզապէս Հայ գրերը գործածել նաեւ վրա-

---

1 «Ի հայրենեաց իւրեանց»ը ընթերցիր «ի հայրենեաց աւրինաց»։

2 Բնագիրը՝ «Փառաբանիչք»․ ուղղական։

3 Կորիւն, էջ 25–26։

ցերէնի։ Եւ եթէ փոխանակ այսպէս գործելու վերջնոյն համար յատուկ աղփաբետ մը կը հնարէ, այս իրողութիւնն ինքնին արդէն կը ցուցընէ, թէ Մաշթոց ինչպէս պէտք տեսած է՝ իւր գիւտն արդէն գոյութիւն ունեցող ուղղութեանց կամ կարգաց յարմարցընել։ Իսկ որովհետեւ վրացերէնի ձայնական գրութեան բարդութիւնը թոյլ չի տար մեզ իսկ անցընել թէ՝ Մաշթոցէն յառաջ մէկը փորձել ձեռնարկած ըլլայ ո եւ իցէ գրով վրացերէն գրելու, պէտք ենք ըսել, թէ Մաշթոցի հնարած վրացերէն գրերուն հիմ եղող աղփաբետը՝ նոյն ատեն Վրաստանի մէջ գործածուած այն գիրն եղած պիտի ըլլայ, որով օտար լեզուաւ յօրինուած պաշտօնական վաւերագրերը կը գրուէին։ Ամէն պարագաները նկատելով այս գիրը արամերէնէ առնուած պահլաւգրին մէկ տեսակը միայն կրնայ ըլլալ, կամ՝ աւելի զգուշութեամբ եւ ուղղագոյնս ինքզինքս բացատրելու համար, այն աղփաբետքին մէկ տեսակը, որ ծագելով արամերէն գրերէն՝ գործածուեցաւ միջին իրանեան գաւառաբարբառներուն՝ առլցուն արամէական գաղափարանիշներով եւ որուն հիմը կը հանի մինչեւ աքեմենիտեան ժամանակաշրջանին[1]։ Իրօք ալ անկասկած այսպիսի հիմ մը կը մատնանշէ Վրաց հնագոյն եկե-

[1] [Այսպիսի տուրփանեան աղփաբետներէն ծանօթ են ինձ ցայժմ երեքը, որոնց սկզբնաւորութիւնները եւ զարգացման քանի մի աստիճանաւորութիւնները կրնանք ըստ պատահման մատնանշել՝ 1) պարսիկ կամ միջին պարսկերէն, 2) բուն պահլաւիկ (որուն առհասարակ քաղդէապահլաւիկ տարապայման անունը կու տան) կամ պարթեւերէն եւ կամ միջին մարերէն, եւ 3) սողդերէն, զոր քանի մի տարի յառաջ F. W. K. MÜLLER յերեւան հանեց։ Ասոնց վրայ պէտք է աւելցընել խուզէան աղփաբետքը, որ ցայժմ միայն դրամներէն ծանօթ է մեզի։ Մասնիկ գրականութեան զարգացման համար ապահովաբար մեծապէս կարեւոր խե-

*ղեցական աղփաբետը[1] (Խուժուրի), որուն մէջ տեսնելու ենք Մաշթոցի գիւտը, որչափ ալ նոյնին անմիջնորդական նախագաղափար օրինակը մեզ տակաւին անծանօթ ըլլայ[2]։*

*Ըստ այսմ կրնանք մեծ հաւանականութեամբ ընդունիլ թէ Մաշթոց հայերէն գրերն ձեւած միջոցին ալ ընդհանրապէս չշեղեցաւ Դանիէլ եպիսկոպոսի հնարած աղփաբետքէն եւ թէ իւր այսպէս վարուելուն որոշ պատճառներ կային։ Դանիէլ իւր աղփաբետով երկայն ատեն արդէն հայերէն գրած էր եւ հետեւաբար այս լեզուաւ թարգմանութիւններ ալ կատարած։ Այսու նման աղերսի մը առջեւ կը գտնենք զմեզ՝ որ կայ գլագոլեան եւ կիւրեղեան գրերու միջեւ, այն տարբերութեամբ միայն, որ հոս՝ խնդրոյն լուծման համար այս երկու տեսակ գրերէն ալ յիշատակարաններ տրամադրելի են մեզի, մինչ դանիէլեան աղփաբետքի վերականգման համար ցայժմ լոկ ենթադրութիւններու ստիպուած ենք դիմել։ Եթէ Մաշթոց հակառակ Դանիէլի, յունական աղփաբետը հիմ բռնած ըլլար. հայ գրերու անկէ ծագումը ձգուած առաջին ակնարկով իսկ պիտի տեսնուէր գլխագիրներու վրայ. այսպէս չէ սակայն։ Այս պատճառաւ գլխաւորաբար մեր հետաքրքրութիւնը կը կեդրոնանայ այն խնդրոյն վրայ, թէ ինչ նկարագիր ունէին դանիէլեան*

---

*պէհլէւան գրերու մասին մինչեւ հիմայ դժբախտաբար միայն գրաւոր ակնարկութիւն մը կը գտնենք ալ-Բիրունիի քով. Մանիքէական աղփաբետն ալ, որ նոյնպէս իրանեան-արամէական գրերու տեսակ է, պէհլէւան աղփաբետքի տակ չերթար։ Սրբագրութեան յաւելուած 28 փետր. 1912։]*

[1] Հմմտ. ՖՐ. ՄԻԻԼԼԷՐ. WZKM. X, էջ 71։

[2] [Իմ Armenische Streifen յօդուածիս մէջ (Յուշարձան, գրական ժողովածոյ, էջ 295) բաժններուս նայելով՝ կարելի է խորէզմեան աղփաբետքը հասկընալ. Սրբագրութեան Յաւելուած, 28 փետր. 1912։]

նշանագրերը։ Զարմանալի է որ Հայերն ոչ միայն այս հարցին, այլ եւ ոչ իսկ Դանիէլի անձնաւորութեան մասին գրեթէ ոչինչ գիտեն ըսել։ Կ՚իմանանք միայն թէ Դանիէլ՝ Ասորի մըն էր եւ եպիսկոպոս, բայց թէ ուր իբրեւ եպիսկոպոս կը գործէր, այս մասին տեղեկութիւն չկայ։ Եթէ Պարսկահայաստանի պետութեան եպիսկոպոսներու նման Կաթողիկոսին հպատակներէն մին եղած ըլլար, անտարակոյս իր թեմը կը ծանուցուէր։ Հայերը հռովմէական Ոսրէնա (մայրաքաղաք՝ Եդեսիա) եւ Միջագետք (մայրաքաղաք՝ Ամիդ) կրկին գաւառները Ասորիք[1] անուամբ կը յիշեն, եւ որովհետեւ Միջագետքի մէջ Ասորի մը այսպիսի գիւտ մը հնարելու ո եւ է առիթ չէր կրնար ունենալ եւ հռոմէական հարաւային Հայաստանի կամ սատրապութիւնք անուանուած երկրամասին մէջ ժամանակակից մեր ճանչցած միակ եպիսկոպոսն է Մարութաս Նփրկերտոյ (Ծոփք, Ծոփք Մեծ), պէտք ենք պարսկական Հարաւային-Հայաստան ուղղել մեր հետազօտութիւնները եւ հոն իրաւամբ ի զուր պիտի չփնտռենք. հոն պիտի գտնենք Դանիէլ Արզոնի եպիսկոպոսը, որ 410ին Իսահակ Կաթողիկոսի գումարած ժողովոյն եւ 424ին Դադիշոյի ժողովոյն ներկայ էր[2]։ Արզոն (Աղձնիք) կից էր Տարօնոյ եւ իր մէջը կը բովանդակէր նաեւ Սանասունի լեռնագաւառը, այսու դիւրաւ կ՚ըմբռնենք թէ Հաբէլ հայ քահանան ինչպէս Դանիէլ եպիսկոպոսի դրացին կրնար կոչուիլ։ Հոս՝ Բզեաշխին սահմանին մէջ հայ տարրը անտարակոյս նոյնպէս մեծ դեր խաղացած պիտի ըլլայ, ինչպէս Ծոփք գաւառին մէջ, որչափ ալ Աղձնեաց հայ եպիսկո-

[1] Կոչէռն. էջ 18. 20. 32։

[2] Synodicon orientale, հրատ. Chabot, էջ 34, 36, 43 = 272, 274, 285 (Notices et extraits, 3, 1902)։

պաս մը Հայկու ութերորդ դարուն յիշուած գտնենք[1]։ Թէ Սանամայ եւ Խութայ լեռնականները «զսաղմոսն զՀին թարգմանեալսն վարդապետացն Հայոց» կը ճանչնային, կը վկայէ Թովմաս Արծրունի (Բ. Գլ. Է. էջ 121), ուր Հայերէնի թարգմանութեան մասին է խնդիրը եւ ոչ թէ ոչ-Հայերէն լեռնային գաւառաբարբառի մը[2]։ Արզնի եպիսկոպոսն ըստ այսմ կրնար անտարակոյս ինքզինքը Հայերէն քարոզելու ստիպուած տեսնել եւ իբրեւ դարձի միջոց Հայերէն այբուբենք մը հնարելու ու գործածելու գաղափարն յղացած ըլլալ։ Եթէ արդէն գոյութիւն ունեցող այբուբենք մը գործածած է, այսու գրերու հեղինակի մասին մեր յարուցած խնդիրը մէկ կամ երկու անգամ միայն ետ կը մղուի. եւ այսպէս կարելի կ'ըլլայ նաեւ եզրակացընել թէ գրի գիւտին հեղինակը ասորի մըն էր, ըստ որում այլազգ կարելի չէ մեկնել թէ ինչ բանի համար այբուբենքը Հայաստանի մէջ բոլորովին անծանօթ կրնար մնացած ըլլալ։ Դանիէլ Բէթ Մոկսայէի (Մոկաց) եպիսկոպոսը, որ նմանապէս 410ին Իսահակայ գումարած ժողովքին ներկայ էր[3], կարելի չէ գրերու հեղինակ մտածել, վասն զի այս ապահովապէս աւելի որոշ յիշուած կ'ըլլար։ Մոկք զուտ Հայկական գաւառ մըն էր եւ Հայերէն նոյն իսկ Յովիանոսի խաղաղութենէն

---

[1] Սիոն, յետոյ կաթողիկոս. Յովհ. Կաթ., էջ 60, Հրատ. Էմին։

[2] Առ այս նմանութիւն մը կը կազմէ Ամիդի քով գտնուող Որթէեան վանքի հիմնադիրն Յովհաննէս, Դանիէլի մէկ ժամանակակիցը. որ Որթէացւոց լեզուն ա՛յնպէս սորվեցաւ մինչեւ բնիկ Որթէացի համարուիլ։ Joh. Eph. de beatis orientalibus, p. 182, = Land, Anecd. Syr., II, 277.

[3] Synodicon orientale, p. 34=272.

եւ պետութեան բաժանումէն ետքն ալ Հայաստանի մաս կը համարուէր[1]։

Որովհետեւ հայ աղփաբետքի բուն հեղինակը ասորի մըն էր, պէտք ենք արդ ենթադրել թէ իւր աղփաբետքին կազմութեան համար ասորերէնն ալ դեր մը խաղացած ըլլալու է։ Այսպէս՝ օրինակի համար կրնայ մեկնուիլ թէ հայ Լ ւ տառը ծագած է միւս կողմը դարձած ܠ եստրանգելայէն, բայց ոչ յունարէն Λէն։ Բայց կարծելը, թէ ժամանակակից եստրանգելեան կազմած ըլլայ հայ աղփաբետքին հիմը, պէտք ենք անմիջապէս մերժել, ինչպէս որ հայերէն չ եւ ջ գրերու՝ ասորի [illegible] եւ [illegible] տառերու հետ համեմատութիւնը ցոյց կու տայ։

Խնդրոյս մասին վերջնական լուծում տալու համար հնագրական ատաղձ դժբախտաբար շատ քիչ ունէի ձեռքիս տակ։ Գրի գիւտին ժամանակէն ձեռագիրներ, ինչպէս յայտնի է, մեր ձեռքը չունինք այսօր. հին հայերէն արձանագրութեանց հետազօտութիւնը շատ խեղճ վիճակի մէջ է մինչեւ այսօր, եւ մինչեւ որ ռուս դիւանագիտութեան պաշտպանութեան տակ՝ յօրինուածական հնախօսական հետազօտութիւններ կատարուին Թուրքահայաստանի մէջ ստիպուած ենք ցայժմ ծանօթ քանի մը հին ձեռագիրներով գոհանալ։ Ըստ ՏԱՇԵԱՆԻ[2] մեր խնդրոյն համար նշանակութիւն չունին Չիթենեաց լերան խճանկարներու արձանագրութիւնները. ընդհակառակն կը ցուիմ

---

[1] Վարդանայ պատերազմի ատեն Մոկաց եպիսկոպոսը Մեծ-Հայոց եպիսկոպոսներուն կողմնակից կը հանդիսանայ. Եղիշէ. Բ. էջ 46։

[2] [Տաշեան. Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ. Վիեննա, 1898. էջ 136 եւ յաջ.։ Այս գործը շատ ուշ ձեռքս հասաւ, որով չկրցայ ըստ պատշաճի գործածել։]

որ Ներսեհ Կամսարականի արձանագրութիւնն ի Հին Թալին Է. դարէն մատչելի չէր ինծի[1]: Այս պատճառաւ կը բաւականանամ Մոսկուայի Աւետարանին ձեռագրովն (887էն), որմէ մօտերս (1904) օրինակ մը առաքած է ինծի համակրելի ազնուութեամբ Պրոֆ. Գր. Խալաթեանց:

Ինչպէս առ հասարակ ընդունուած է, յունական ծագում ունին Ռ ⊡ = Θ (?), Ֆ ɸ = Φ եւ + ꝑ = X ինչպէս նաեւ Է Ⴑ = E, Ի ꟾ = I եւ - ꟾ = Y գրերը: Հոս մեր առջեւ կ'ելլէ հիմնական սկզբունք մը՝ որ հիմ առնուած նշանագրերը ձեւափոխելու մէջ որոշիչ նշանակութիւն ունեցած է. այսինքն գրերու վարի մասին բոլորակ ձեւ տալէն խորշուած է. այս պատճառաւ ալ Ռին ձախ կողմը վարէն բաց թողուած է, իսկ աջ կողմը հանգոյցի ձեւ առած է[2]: Նմանապէս ջանք եղած է առիչեղ գծերը ուղիղ դիրքի վերածելու, անոր համար ) ի ժանիները դէպի աջ դարձուած են, որով նշանագիրը ⊢ ձեւն առած է. ꝑ ալ այսպէս եղած է: Մարդ կը միտի ենթադրել թէ գրչութեան նիւթերը աւիթ եղած ըլլան այս ընթացքին, որ գերմանական եւ հին թուրքական ռուն գրերու՝ նման առանձնայատկութիւնները կը մի-

[1] [Անդ, էջ 139, ուր կ'առաջուի Ալիշանի Այրարատին, որ անմատչելի է ինծի:]

[2] ԳԱՐՏԻՀԱՒՍԷՆ, "Թ"ն ուղղակի յոյն նօտրագիր Ɵին հետ կը միացընէ: Բայց այն դժուարութիւնը, զոր հնախօսական տեսակէտով կը յարուցանէ "Թ"ին՝ յունարէն Θ գրէն ծագումը, կը դրդէ զմեզ հարցընելու թէ արդեօք լաւագոյն չէ՞ հայ տառս հնագոյն եատրանկելա ծ տառէն մեկնել: Այսու նշանագիրս դէպի աջ դարձած կ'ըլլայ եւ հանգոյցը փոխանակ դէպի վեր ուղղուելու՝ կողմնակի ուղղութիւն մը կ'առնու ⊡: Այս պարագայիս մէջ ալ դարձեալ ի հարկէ յունական կաղապարը ուղղիչ դեր կ'ունենայ:

չեցընէ․ բայց այս ենթադրութեան նպաստ չեն մատուցաներ այն գրերն, որո՛նք յունարէնէ փոխ առնուած չեն։ Է Ճ գրէն՝ փոքրիկ եղանակաւորումներով կազմուած են է Է եւ ը Ը գրերը։ Յունական H գիրն անտարակոյս անոր համար նկատի չէ առնուած, որովհետեւ իւր նոյն ատեն դէպի ի միտող հնչումը հայերէն էի հնչումէն շատ տարբեր էր[1]։ Ի տառին աջակողմին կտուցը թէ ինչ նպատակաւ է, չեմ գիտեր։

Կը տարակուսիմ ընդհակառակն թէ արդեօք վարէն բաց Π գիրը, նոյնպէս նաեւ Ւ՝ յունական O եւ յոյն Λէ՞ն ծագած են[2]։ “Ո„ի յիշուած առանձնայատկութիւնը լաւագոյնս կը մեկնուի եթէ ենթադրենք թէ գեղագիր Հառփանոս եստրանգելա “„[3] տառէն կազմած ըլլայ գայն՝ յենլով միւս կողմանէ յունարէն Օի։ Դարձեալ մի եւ նոյն հաւանականութեամբ կրնայինք կարծել թէ Պալհաւիկ աղփաբետքի[4] համապատասխան ɣɣ նշանանգրէն (Հօճիօբօշի մէջ) ծագած ըլլայ այն։ Աւելի մեծ վստահութեամբ կը մերժեմ Աի յունական ծագումը․ “ա„ եստրանգելա ĸ էն կրնայ մեկնուիլ, եթէ ընդունինք

---

[1] Յոյն նոտրագիր ՚ էն (ԳԱՐՏԴՀՈՒՍԷՆ) “Է„ն շատ հեռու է։ [Հայ էն նոյն իսկ հին ժամանակները երկայն ձայնաւոր չէր, այլ բաց ä ի միտող e մը։]

[2] Յունական նոտրագիրը միայն վերջէ կողմանէ բաց o ունի։

[3] Տես EUTINGի գրերու տախտակը, սիւն 68—71 CHWOLSONի Աստրա-նեստորական գերեզմանագրերու տետրը․ Mém. de l'Acad. imp. de St. Pétersbourg, t. XXXVII, Nr. 8, 1890.

[4] Պահլաւիկ կ'անուանեմ՝ այն լեզուն ու գիրը, — որ սխալմամբ քաղդէապահլաւիկ կը կոչուի —, որուն բնիկ հայրենիքն էր իմ կարծեացս համաձայն Ատրպատական․ իսկ պարսիկ՝ այն լեզուն ու գիրը, որ կը գործածուէր Պարսից թագաւորութեան մէջ թէ Սասանեանց տիրելէն յառաջ եւ թէ սիրած միջոցին։

որ վերջինս գլխի վայր դարձած է. աւելի հաւա-նական է սակայն ինծի համար թէ աջակողմն դարձած պալհաւիկ ᏓᏓ գրէն էր "ա"ի յառաջագայութիւնը։

"Ձ" Ծն կը կարծեմ թէ LAGARD շատ իրաւամբ եստրանգելա Տ Տէն (411) կ'ածանցէ. վարի գիծը աւելի վեր դարձած է եւ շեղ գծով մը ընդմիջուած։ "Յ" Յ գիրն ալ յառաջ եկած է նոյն գրէն այսպէս՝ վարի մասին գիծը անփոփոխ մնացած է, իսկ վերին շեղ գիծը փոխանակ դէպի աջ տարուելու ուղղուած է դէպի յետ եւ դէպի վար գալարած է՝ ^ փոխանակ ᵕ։ "Շ" Շ տառը արամէականէ առնուած է, եւ Ատրպատականի մէջ հնարուած Ն ընիկ պալհաւիկ գրին հետ — որ յետնագոյն Արշակունեաց դրամներուն եւ քանի մը հնագոյն սասանեան արձանագրութեանց վրայ կը նշմարուի — սերտ յարաբերութեան մէջ է, եդեսական հնագոյն ∨ էն (գրեթէ 200ին յ. Ք.[1]) ալ կրնայ ծագած ըլլալ. պարսիկ ᏅᏅ եւ եստրանգելա ϫ ϫէն (411ին) ընդհակառակն շատ կը տարբերի[2]։ "Ր" Ր գիրը վերն յիշուած սկզբունքին համաձայն կրնար յունարէն Ρէն յառաջագայիլ, բայց իւր Դ-ի հետ — զոր կարելի չէ այլեւս յն. Δ կամ Ճ էն մեկնել[3] — ունեցած պատմական աղերսը, երկուքին ալ մի եւ նոյն ծագումը վերագրելու կը դրդէ զմեզ։ Այսու "Ր" տառը կը հաւաստի կամ պալհաւիկ ՂՂի եւ կամ հին ասորի ՂՂի[4], այն

[1] Համմտ. EUTING. անդ սիւն 68։

[2] EUTING. սիւնակ 68 (գրեթէ 200ին յ. Ք.), 69 (350/4·0ին յ. Ք.)։

[3] Հակառակ ԳԱՐՏԴՀԱՒՍԷՆի։

[4] ԳԱՐՏԴՀԱՒՍԷՆ չն յոյն ζ (ξ) նոտրագրէն կ'ածանցէ. բայց ըստ իս այս կարծիքն այնու կը տուժէ իւր զօրութիւնը որ հայերէն ջ գիրը Դանիէլի եւ Մաշթոցի ժամանակ գայս միայն հարկ է նկատողութեան առնուլ — հնչման տեսակէտով հազիւ հազ

տարբերութեամբ միայն որ նշանագիրը աջակողմն դարձած է եւ վերի կտուցը յունական յառաջադիր օրինակին համաձայն դէպի վար ծռած է։ "Գ" գրին վրայ տակաւին անարատ մնացած է պալհաւիկ ܓ կամ հին եդեսական ܓ տառին նկարագիրը. մնացած է իւր ձախամէտ դիրքին մէջ, որպէս զի որոշակի զանազանուի "Ը"էն, բաց աստի աջ կողմը որոշիչ կտուց մը ընդունած է եւ վերի կտուցը ձախ կողմանէ գալարած է դէպի վար։ Այսչափը տեսնելէն ետքը դժուարին է նոյնպէս կարծել թէ "Ե" Ε զուտ յունական ծագում ունենայ, ըստ որում եթէ Bի կրկին շրջանակներուն վարի կլորութիւններէն ազատիլ ուզուէր, այն ատեն վարի շրջանակն կտուցի մը վերածելով բթացընելու հարկ չէր տեսնուեր, որով գրեթէ R ձեւը կը կրէր տակաւին վրան։ Իմ կարծիքովս այս կտուցը կը մատնանշէ կաղապարին հիմնագիծը կամ ուրիշ խօսքով "Ե" գիրը ասորի ܗ կամ պալհաւիկ ܗ տառի մը աջակողմն ուղղուած ձեւն է, որ յոյն նախագաղափար Bի վրայէն ընդունած է նաեւ դէպի վար ծռած վերին կտուց մը եւ երկարաձիգ միջնագիծ մը։ Ինչպէս "Մ" Մ, որ առնուած է հնագոյն եդեսական ܡ էն (աջ կողմն ուղղուած)[1], նոյնպէս « Ա,

---

թէ յարաբերութեան մէջ էր յոյն ξի հետ։ Միեւնոյն առարկութիւնը կը յառնէ նաեւ Լագարդի այն ճիգերուն դէմ, որոնցմով շի աղփաբետքի մէջ յոյն ξի համդէպ գրուած համապատասխան տեղէն կը ջանայ առաջնոյն նախապէս կրկնաբաղաձայն տառ ըլլալը եզրակացընել։ Թէ ինչու "Արտաշէս" = Ἀρτάξης, հնագոյն Ἀρταξίας = հայերէն *Արտաքշէսա, "Արտաշատ" = Ἀρτάξατα, հնագոյն Ἀρταξίασατα անուններուն մէջ քշ ձայնակցման քն յետոյ ինկած է, մինչ օրինակի համար աշխարհ = հզ. chšaϑram բառի մէջ տեղաշրջուած ու մնացած է, չենք գիտեր, այս միայն ստոյգ է սակայն թէ նիւթիս մէջ չեշտման հանգամանքները դեր մը խաղացած են։

[1] Յոյն [illegible] էն շատ տարբեր է։

որ կը համապատասխանէ պալհաւիկ ղդի[1], գլխիվայր դարձած նշանագրեր են՝ յայտնապէս Ոի հետ չշփոթելու համար, որ ինչպէս վերն յառաջ բերուած ուրիշ պատճառաբանութիւններով ընդունեցանք, պէտք է որ Դանիէլէն ներմուծուած ըլլայ։ "Կ" Կի համար սորի ⌒ տառին կ վերջաձեւն ընտրուեցաւ[2] գրեթէ 350, 400ին, յ. ք. (յետոյ Դ)։ "Լ" Լ ուրիշ բան չէ բայց եթէ սորի Ⴝին (հնագոյն ⅃⅃) աջակողմն դարձած եւ ուղիղ դրուած ձեւը։

Ուրիշ քանի մը նշանագրեր նոյնպէս կրնան բաւականաչափ մեկնուիլ սասանեան պարսիկ (յիշատակա)գրերէն. առ այս կը պատկանին ի մասնաւորի Ն ⟩ = պարսիկ Ց եւ Խ Խ, ուր, որչափ կը յիշեմ, ԼԱԳԱՐԴ արդէն միջին պարսկերէն Ր կցեալ գիրը նկատած է։ Փ Մ գիրն ալ շատ դիւրաւ կը մեկնուի սասանեան Ս գրէն (գրական Ր), այլ ոչ այնչափ դիւրաւ սորի ⌒ տառէն։ Եթէ սորերէնէ ծագած համարինք հայ Փ տառը, այն ատեն պէտք ենք ընդունիլ նաեւ թէ միջին ուղղաձիգ գիծը ոչ թէ իբր հանգոյց հորիզոնական գծին մէջէն անցած է, այլ այս գծին ձախակողմէն դէպի վեր երկարած է այսպէս՝ ⌒⌒։ Ակնյայտնի է որ գործածած չեն՝ սորի յ ղ, յ ն եւ յ ծ գրերը, որոնք դիւրաւ կրնային շփոթուիլ իրարու հետ։ "Ն" Նի մէջ կ'ընդնշմարեմ սասանեան ⌐ին[3] գլխագիր մէկ կերպարանափոխու-

---

[1] ԳԱՐՏԴՀԱՒՍԷՆ Ս գիրը յոյն նոտրագիր բոլորակ C էն կ'ածանցէ. բայց ինչո՞ւ է այն ատեն այս մեծ տարբերութիւնը, մանաւանդ երբ Մաշթոցի գլխաւոր ջանքն էր յոյն օրինակին անձկագոյնս կապուիլ։

[2] Այս՝ հազուադէպ պարագաներէն մին է, ուր կարելի է մտածել նաեւ յոյն նոտրագիր ʎʎի վրայ։

[3] Յոյն Nի հետ քիչ նմանութիւն կարելի է գտնել։

թիւնը, իսկ "Ջ„ Ջի մէջ սասանեան ‐ի մէկ կրկնումը։ "Պ„ Պ եւ "Փ„ Փ տառերն թէ որ օրինակի վրայէն ձեւուած են, դեռ չեմ գիտեր։ Այս մասին համազօրներ չեն ներկայացըներ մեզի ոչ ասորի, ոչ պալմիրական եւ ոչ պալհաւիկ գրերը։ Կերպապէս Պ գիրը սասանեան Գ կամ եդեսական Ց Ց գրին կրկնումն է (ի բաց թողլով հորիզոնական կրկին գիծերը՝ քիչ հաւանականութեամբ[1])։ Իսկ "Գ„ի ձեւը նման է սասանեան Գ Գ ի[2]։

Ամենէն դժուարինն է քմական եւ շչական նշանագրերու լուծումը տալ։ Հոս ալ սակայն ամենէն հաւանականը կ'երեւայ, որ "Ղ„ Ջն արշակունի դրամներուն Հ (սասան. ՀՀ) տառէն ծագած ըլլայ։ Վերի կտուցն ձախակողմը դրուած է եւ ծռած է դէպի վար գեղագրական կանոնի մը համեմատ, զոր ստէպ պահուած կը տեսնենք։ Հայ նշանագրին ձեւին աւելի կը մօտենանք, եթէ հիմ բռնենք շրջած պահլաւական ՀՀ գրական տառը։ Այսու հանդերձ այս գրական տառին գործածուած ըլլալը ժամանակագրական դժուարութիւններ կը յարուցանէ։ "Ճ„ Ճի եգիպտական (խպտի) ծագումն ընդունելէն յառաջ՝ հարկ է նախ ասորահայական սահմանակից երկիրներու մէջ խպտերէնի ազդեցութիւն ունեցած ըլլալը հաւանական ընծայել։ Կանխագոյն ժամանակի մը համար կարելի է յամենայն դէպս մատնանիշ ընել թէ Մար Աւգէն՝ Միջագետքի միանձնական կենաց հիմնադիրն, ու իր աշակերտը Շաղիտա՝ Բէթ Կարդուի

---

[1] ԳԱՐՏՏՀԱՒՍԷՆ նոյնը յոյն նոտրագիր Ռ ի նման կը գտնէ որ մինչեւ Ք. յ. Բ. դար կը բարձրանայ։ Բայց այսու միջնորդութիւնը շատ առեղծուածային կը մնայ։

[2] ԳԱՐՏՏՀԱՒՍԷՆ կը համեմատէ յոյն նոտրագիր ϳ ի հետ. բայց այսու ֆին վերի գոց գիծը, որ հայ գրերուն ձգտումներուն այլազգ հակառակ է, անմեկնելի կը մնայ։

առաքեալը — զոր Փաւստոս Բիւզանդ՝ Տարօնոյ Աշտիշատ քաղաքին Դանիէլ քորեպիսկոպոսին աշակերտը կ'ընէ — երկու սուրբերուս ասորի վարքագիրներուն նայելով՝ ծագմամբ Եգիպտացի էին եւ Պաքոմէոսի վանքերէն էին[1]։ Հայ աղփաբետքի գիւտի ժամանակին համար սակայն Եգիպտոսի եւ պարսկական Միջագետքի միջեւ այսպիսի յարաբերութիւն մը ծանօթ չէ ինծի։ “զ„ Զ եւ “ձ„ Ձ յայտնապէս կախում ունին իրարմէ, այսու հանդերձ դիւրին չի թուիր ինծ Ջի մէջ տեսնել եղանակաւորումը յունական նոտրագիր Zի (ԳԱՐՏԴՀԱՒՋԷՆ), ապա թէ ոչ այս հայ նշանագրերուն ձախակողման բոլորակին յառաջագայութիւնը դժուարին կ'ըլլայ մեկնել[2]։ Թերեւս պալհաւիկ [illegible] է կամ սասանական [illegible] է ծագած ըլլայ հայերէն նշանագիրը։ Ջի մէջ կողմնական բոլորակը վարէն բացուած է եւ փոխանակ վարի հորիզոնական գծին՝ ձախ կողմը վարը հանգոյց կամ օղակ մը կազմուած է։ “ջ„ Ջի ծագման մասին ո եւ է ըսելիք չունիմ. նոյնպէս “ժ„ Ժն մթին է ինծի։

Այ եւ ոյ երկբարբառները ձայնապէս ներկայացնելու ատեն Մաշթոց հիմ բռնեց ասորերէն քերականութիւնը, որ երկբարբառին երկրորդ-կազմիչ տարբեր բաղաձայնի դեր կու տայ. եւ ըստ այսմ գրի անցուց այ եւ ոյ անտարակոյս, որովհետեւ նոյն ատեն յունարէն αι եւ οι նշանագրերն ε, ä եւ υ, üի պէս միաբարբառ կ'արտասանուէին։ Յունարէն ωն ներկայացընելու համար ով բաղադրութիւնը գործածուեցաւ, ըստ որում հայ-

[1] Վարք Մար Աւգենի. հրատ. P. Bedjan, Acta mart. et sanct. III, 376-480. Վարք Շաղիտայի. անդ I, էջ 424-466։

[2] Եթէ Ջ. յուն. նոտրագիր Ջ էն է, ինչ բանի համար բոլորակն աջակողմն գրուած չէ։

երէնը նոյն հնչումը չունէր եւ հետեւաբար յատուկ նշանագիր մը աւելորդ էր։ Իւ- բաղադրութիւնը թէ յուն. ՍԻ տեղը բռնեց եւ թէ իբր հայկական յատուկ հնչում կիրարկուեցաւ, որուն բնիկ ձայներանգը տակաւին անծանօթ է։ Միեւնոյն իւ- ձեւը բաց աստի (բառամիջին ձայնաւորներէն յառաջ եւ բառավերջին) իվ հնչումն ունի։ Նոյնը պիտի ըսենք ու-ի մասին ալ։ Իրական թերութիւն մըն է սակայն որ Մաշթոց յունարէն ου-ն — որ ժամանակաւ իրական երկբարբառ մը կը ներկայացընէր — պարզապէս փոխ առնլով գոհացաւ եւ յատկացուց թէ ու-ի եւ թէ բառամիջին բաղաձայն վ-ի կամ լաւագոյնս կիսաձայն ւ-ի, որով ձայնական ապահովութիւնը շատ տեսակէտէ վտանգեցաւ։ Մաշթոցեան դրութեան տկար կողմն է ընդհանրապէս վ-ի պաշտօնը բառամիջին եւ բառավերջին։ ա, ե, է գրերուն կցուեցաւ ւ, իսկ ո-էն ետքը յունարէն նախանկար օրինակին անձկագոյնս կապուելով ւ միայն կարելի եղաւ դնել, մինչ բաղաձայներէն ետքը ու- կամ ինչ ինչ պարագաներու մէջ լոկ ւ ալ կրնար դրուիլ, այսպէս "Նու-իրակ" (nvirak) եւ (սեռ.) "գին-ոյ" (ginvoj), իսկ ւ, որ "աւար", "իւր" բառերու մէջ աւով եւ իւով au եւ iu երկբարբառները կը կազմէ, "Հաւատարիմ", "Հիւանդ" բառերու մէջ կը ներկայանայ իբրեւ բաղաձայն կամ կէս ձայնաւոր։ Թէ ինչո՞ւ Մաշթոց ամէն տեղ վ տառը իբրեւ կէս ձայնաւոր կամ բաղաձայն չէ ներմուծած, դեռ անծանօթ է։ Ցամենայն դէպս վ-ի զանազան պաշտօններ տալով իւր աղփաբետքը աւելորդ տեղ ծանրաբեռնած է եւ արտատարած երկդիմութեամբ, որ թէեւ գոյութիւն չունի կենդանի լեզուն գիտցողին համար, բայց մեզի համար շատ անգամ խանգարիչ է։

Գրի գիւտին մէջ մէկ կողմանէ Դանիէլին — կամ անոր նախորդին, եթէ կայ — եւ միւս կող-

մանէ Մաշթոցի եւ անոր Հռոփանոս գեղագրին ունեցած մասնակցութեան որոշ սահմանը գծել կարծեմ երբեք կարելի պիտի չըլլայ։ Մեր վերն ըրած վերլուծումը հնարաւորութիւն կու տայ մեզի Դանիէլի աղփաբետքին վրայ այժմ թեթեւ գաղափար մը կազմելու։ Այս աղփաբետքն դէպ ի ձախ երկարող բաղաձայնային տառեր էին, որ ձայնաւորները շատ անկատար կերպով մատնանիշ կ'ընէին ու կ'որոշէին։ Այս աղփաբետքը ժամանակակից արամէական կամ իրանեան — արամէական (պալհաւիկ կոչուած) աղփաբետքներէն միոյն հետ նոյն չէր, այլ կազմուած էր զանազան եւ նոյն իսկ հնագոյն աղփաբետներէ փոխառեալ տառանշաններով։ Շփոթութեանց եւ երկդիմութեանց առջեւ առնլու համար ինչպէս որ հնարիչը ի մէջ այլոց հին ասորական ձեւերու դիմած էր, նոյնպէս ալ անտես չէր ըրած մէկալ կողմանէ սասանեան եւ նոյն իսկ պարթեւական (պալհաւիկ) նշանագրեր այն պարագային, երբ ասորերէնն անբաւական եղած էր։ Խնդրական է թէ արդեօք Դանիէլ ծ եւ յ, ղ, ջ եւ ճ, ղ եւ ժ տառերն զանազանա՞ծ է. յամենայն դէպս միաւոր եւ լ եւ ղ, ր եւ ռ կրկնաւոր նշանագրերուն եւ թ, փ եւ ք թաւ գրերու զանազանութիւնը Մաշթոցի գործքն է։ Մաշթոց էր նոյնպէս որ ե, ի եւ ո ձայնաւոր նշանագրերն ներմուծեց եւ ձայնական դրութիւնը կարգաւորեց յունական նախագաղափարին վրայէն։ Յունական կրթութեան ապացոյց է նաեւ թաւերու եւ նայերու[1] գրական ընդհանուր

---

[1] Հայ թաւ գրերուն յունարէն Ագաթանգեղոսի մէջ յն. θφχ տառերով տառադարձութիւնը կը ցուցընէ թէ վերջիններս նոյն ատեն իբրեւ պարզ թաւ չէին հնչուեր տակաւին. առաջին անգամ եօթներորդ դարուն վերջերուն ծագած Διήγησιςի մէջ եւ Կոստանդին Ծիրանածնի քով հայերէն թաւ գրերն յունարէն τπκ նայ գրերով կը տառադարձուին։ Միեւնոյնը կը հետեւի նաեւ գերման k թաւին գոթական եւ ուրիշ անուանց

զանազանութիւնը, որ բնաւ այնպէս դիւրահասկանալի չէ, ինչպէս գերմանական զարհուրելի չափագրութեան օրինակը կը սորվեցընէ։ Բայց Մաշթոց գլխաւորաբար գրերու աջակողմեան ուղղութիւն մը եւ հետեւաբար յունական տեսք մը տուաւ, որով դանիէլեան գրերը գեղագրին ձեռքին տակ շատ անգամ կարեւոր փոփոխութիւններու հարկ էր որ ենթարկուէին։ Այնպէս որ դժուար է գուշակել թէ Ղ, Ռ եւ Վ գլխագիրները Լ (Ղ), Ր (Ռ) եւ Ւ (Վ) գրերու կրկնուելովը ծագած են։

Այս բաւածներէն կը տեսնուի թէ իրապէս այսօր ալ Կորեան տուած տեղեկութեան մասին ունինք ապացոյցներ, թէ Դանիէլի գրերը ունեցած են փոխառութիւններ ոչ միայն ուրիշ՝ այլ նաեւ շատոնց գործածութենէն դադրած աղփաբետներէ։ Ընտրողական այսպիսի ընթացքի մը պատճառներն բաւականաչափ պայծառ են։ Արդէն 400ին ասորի նշանագրերն այնչափ ընթացիկ էին եղած, որ հազիւ կը զանազանուէին իրարմէ. գրերու Հեղինակը միջին իրանեան գիր մը՝ նշանագրերուն սակաւաթիւ ըլլալուն պատճառաւ՝ չէր կրնար ընտրել իբրեւ օրինակ հայերէնի, որ այնչափ հարուստ է հնչումներով։ Այն ամէն աղփաբետները սա՛ տկար կողմն ունէին որ շատ մը տառանշաններ իրարու նման ձեւ առած էին, երեւոյթ մը, որ Սասանեանց ժամանակամիջոցին ալ շարունակուեցաւ։ Եթէ աղփաբետներն — առանց նկատողութեան առնլու՝ ձայնաւորներու թերի կերպով ներկայանալը — ի վիճակի չէին իրանեան հնչական դրութիւնը կատարելապէս ու որոշակի ներկայացընելու, բնականաբար առաւել եւս սոյն աղփաբետներէն այս կամ այն յարմարութիւն չունէր

---

մէջ χով տառադարձուելէն. օրինակ Ἀλάριχος եւ այլն։ Յամենայն դէպս յուն. χ տարբեր էր պարսկերէն ch = հայ Խ գրէն, որովհետեւ χ միշտ + թաւ գրով է որ կը տառադարձուի։

իբրեւ հիմ ծառայելու աղփաբետքի մը, որ հայերէնի կնճռոտ ու ճոխ հնչական դրութեան յարմարէր։ Ընդհակառակն բնական էր այն աղփաբետներէն այս կամ այն տառերն առնուլ, զորոնք ասորերէնը չունէր։ Ասկէ կը տեսնուի պայծառօրէն, թէ ինչ արժէք ունի Ղազարի “վաղընջուց գրեալ չարագիր տառիցն„ (տես վերը էջ 34/35) պատգամային խօսքը։ Բայց Դանիէլի գիրն հայերէն իրական եւ կանոնաւոր աղփաբետքի մը վերածուեցաւ Մաշթոցի փոփոխութիւններովն ու լրացումներովը[1]։

Գալով խնդրոյս ժամանակագրական մասին, պիտի ըսենք թէ այս խնդիրը հայ մատենական թուագրութեան ամբողջական ժամանակագրութեան հետ կապ ունի եւ անոր հետ ի միասին հարկ է որ լուծուի։ Այս պաշտօնը կատարած եմ արդէն վերոյիշեալ “Untersuchungen zur armenischen Chronologie und Geschichte„ յօդուածիս մէջ։ Հոս ըստ այսմ կարեւոր եզրակացութիւններն հաղորդելով պէտք եմ գոհանալ։ Կորեան բնագիրը բոլորովին զերծ չէ վրիպակներէ. այսպէս ժամանակագրական վերջաբանին մէջ, էջ 48, կ'ըսուի՝ “Հայերէն գրերու գիւտէն մինչեւ սորոյն վախճանը՝ 35 տարի, որ է ըսել հաշուելու է Յազկերտ Առաջնոյն Ը. տարիէն„ (կը սկսի 12/14 Աւգոստոս 406). որ կը հակասէ հեղինակին տուած ուրիշ տեղեկութիւններուն։ Հաւանաբար փոխանակ “Ը„.ի պէտք ենք ընթեռնուլ “ԺԵ. ամէ„, որով հայ գրի

[1] [Հոս բնականաբար հարկ էր նաեւ նկատողութեան առնուլ առ ժամն ծանօթացած մանիքէական նոյնպէս նաեւ մարկիոնեան աղփաբետքն (Kitāb al Fihrist, 17, 14), այս երկու աղանդներն ալ Եզնկայ վկայութեան համաձայն հինգերորդ դարու մէջ Հայաստան բաւական ազդեցութիւն ունեցան։ Հայ-վրական աղփաբետներու մանրամասն յարաբերութիւնը հնագրական ատաղձի պակասութեան պատճառաւ խնդրոյ նիւթ չառի։ Սրբագրութեան յաւելուած, 18 Փետր. 1911։]

գիւտը 402/3ի կը փոխադրուի։ Միջագետքի մէջ իբրեւ ժամանակակից եպիսկոպոսներ կը յիշուին Ակակ Ամիդայ եւ Բաբիլաս Եդեսիոյ։ Բաբիլաս անուն եպիսկոպոս մը սակայն այս ժամանակաշրջանին մէջ ծանօթ չէ, Բաբիլասը պէտք է ընթեռնուլ Ռոբբուլաս = ܪܒܘܠܐ, որ սակայն 411/12ին եպիսկոպոս եղաւ եւ մեռաւ 8 Աբ 746 = 8 Աւգոստ. 435։ Իսկ 398 Նոյեմբեր 23էն մինչեւ 409 Աւգոստոս 1 Ուռհայի աթոռը կը գրաւէր Պեկիդա։ Ուրեմն հոս անտարակոյս ժամանակագրական վրիպակ մը գոյութիւն ունի, որ սակայն պատմական իրողութիւններով շատ դիւրաւ կը մեկնուի։

Հայ աղփաբետքի գիւտին տարեթիւն է Վռամշապուհ թագաւորին հինգերորդ տարին, որով սա 398/9ին գահ բարձրացած կ'ըլլայ։ Վռամշապուհ ոչ թէ գրի գիւտէն ետքը, ինչպէս Ղազարայ բնագրէն կը տեսնուի (էջ 54), այլ ամբողջ 21 տարի թագաւորեց, ուրեմն 398/9—418։ Շատ կը շեղէինք հոս մեր խնդրէն եթէ Ղազարայ խառնակ տեղեկութիւնն մանրամասն քննել ուզէինք. այս մասին կ'առաքենք մեր ընթերցողներն վերն յիշուած յօդուածին։ Այս տեղ զմեզ հետաքրքրող գլխաւոր թուականներն են՝

Խոսրով Գ. թագաւոր Պարսկահայաստանի 383—388 (386?)

Առաւան[1], հազարապետ 389—?

Մաշթոց արքունեաց ծառայութեան մէջ կը մտնէ գրեթէ 389ին։

Մաշթոց կրօնաւոր 391/2։

Վռամշապուհ, եղբայր Խոսրովու, թագաւոր 398/9—418։

Հայ գրի գիւտը 402/3

---

[1] Պէտք է զանազանել Պապ թագաւորի ժամանակակից magister armorum Arrabannesէն (այսպէս Վատ. Ձեռ.] Ամիանոսի քով։

Խոսրով Գ. երկրորդ անգամ, 8 ամիս, 419։
Շապուհ, Որդի Յազկերտի Ա. 420
Սահակ կը վախճանի 438
Մաշթոց կը վախճանի, 13 Մեհեկան, Յազկերտ Բ.ի 1 տարին = 17. փետր. 439։

Հայ աղփաբետքի գիւտին յոբելեանն ըստ այսմ պէտք էր 1902/3ին տօնուիլ։ Այս ազատաբար գործքին պատմական էութիւնը, զոր հիմ բռնելով գործոյն պատմական նշանակութիւնը հարկ է գնահատել — կը կազմէ՝ ոչ թէ Մազդեզանց յարձակման դէմ քրիստոնէութիւնն հաստահիմն ապահովելու հոգը պարզապէս, ինչպէս առ հասարակ կը կարծուի — որովհետեւ Յազկերտ Ա. Նոյն եւ նախորդին՝ Վահրամ չորրորդին ժամանակ եկեղեցին անդորր խաղաղութիւն կը վայելէր — այլ Սելեւկիոյ կաթողիկոսին ոտնձգութեանց դէմ՝ ազգային Հայ եկեղեցւոյ անկախութեան պաշտպանութիւնը. այն կաթողիկոսին, որ զօրավիգն ունենալով իրեն Արքայից արքայն, կը ճգնէր գերագոյն գլուխն ըլլալու Երանշարի բոլոր քրիստոնեաներուն, որոնց թուոյն կը վերաբերէին նաեւ անդրկովկասեան քրիստոնեայ ազգութիւնները, եւ ասոր համար ալ՝ Հայաստան. Վրաստան ու Աղուանից աշխարհն ալ իր տիրողութեան մէջ անցուցած էր[1]։ Մաշթոցի գիւտն ու այսու կատարուած թարգմանութիւնները այս պայքարին համար հոգեկան զէնքեր տուին Հայաստանի եպիսկոպոսներուն ձեռքը։

---

[1] Synodicon orientale, հրտկ. Chabot, էջ 37 = 276, Մար Յահբալահայի ժողովքը, յամի 420։



# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

Ա. Գալէմքեարեան Հ. Գր. Վ.. Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գողէր, Իրաւունք Հայոց: 1890: Էջ 85+59: Փր. 1.25

Բ. Մենեվիշեան Հ. Գ., Ազգաբանութիւն ազն. զարմին Տիւզեանց: 1880: էջ 50: Փր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յ., Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: Էջ ԺԱ+159: Փր. 1.25

Դ. Դան Դ., Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: Էջ 79: Փր. —.85

Ե. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: Էջ Դ+272: Փր. 3.—

Զ. Տըվլէ Ա. եւ Գ. Փիսոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: Էջ 82: Փր. 1.—

Է. Մառ Ն., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ո. Անոփեան: 1892: 89: Փր. 1.25

Ը. Կարրիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Ժ+51: Փր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտր. Ա. 1794—1860: (1 լուսանկարով:) 1893: Էջ 232: Փր. 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Է+92: Փր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 զընկատիպ.) 1893: Էջ Ժ+533: Ֆր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Ջենոբ Գլակ, Համեմատական ուսումնասիրութիւն: 1893: Էջ Զ+78: Ֆր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փ., Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տխտկ՝. 55 պտկ.:) 1894: Էջ Ը+103: Ֆր. 2.—

ԺԴ. Կարրիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1894: 8° Էջ ԺԱ+43: Ֆր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Փրոքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: Էջ Թ+145: Ֆր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. Մասն Ա: Ա–Զ. Նեմեսիոս, Պրոկղ Դիադոխոս, Խոսրովիկ, Գիրք Հերձուածոց, Պրոկղ եւ Սեկունդոս: 1895: Էջ ԺԲ+296: Ֆր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Հայկական աշխատսիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ամփոփուած եւ թարգմ. ծանօթութեամբք: 1895: Էջ Թ+202: Ֆր. 2.50

ԺԸ. Տիւրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: Էջ 92: Ֆր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կերլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: Էջ Թ+352: Ֆր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յ. Վ., "Վարդապետութիւն առաքելոց" անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադդէի: 1896: Էջ Թ+442: Ֆր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հե-

տազօտութիւն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: Էջ Է+62: Փր. 1.—

ԻԲ. Կարրիէր Ա., Աղբարու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1897: Էջ ԺԵ+107: Փր. 1.50

ԻԳ. Ցովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ, Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897: Էջ Ը+272: Փր. 4.—

ԻԴ. Ցովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ: 1897: Էջ Ա—Ը: 273—522: Փր. 3.—

ԻԵ. Գելցեր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք 1. Ցանկ Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897: Էջ Ը+130: Փր. 1.50

ԻԶ. Մենեվիշեան Հ. Գ. Վ., Գիրք (կամ՝ յօդուած) գրելու արուեստը: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: Էջ Է+118: Փր. 1.25

ԻԷ. Խալաթեան Գր., Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: Էջ Է+53: Փր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ. Վ., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչութեան արուեստին: (10 զնկատիպ պատկերով:) 1898: Էջ ԺԱ+202: Փր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փ. Բիւզանդացի եւ իր պատմութեան խարդախողը: Քննութիւնն Մ. Խորենացու աղբիւրների մասին: 1898: Էջ Թ+175: Փր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899: Էջ Է+26: Փր. —.50

ԼԱ. Քոսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ ԺԲ+369: Փր. 5.—

ԼԲ. Քոսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ վիճակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ Ժ+161: Ֆր. 2.50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հտր. 1780—1825: 1899: Էջ Է+554: Ֆր. 5.—

ԼԴ. Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: Էջ Է+120: Ֆր. 1.—

ԼԵ. Կարրիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեանները Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան (1 քարտէզով): 1899: Էջ 43: Ֆր. —.70

ԼԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: Էջ ԺԱ+193: Ֆր. 2.50

ԼԷ. Տաշեան Հ. Յ. Վ.. Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. (տես ԺԶ:) Մասն Բ: Է—Ժ. Խիկար եւ իւր իմաստութիւնն, Ագապետոս եւ իւր Յորդորականք առ Յուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: Էջ ԺԲ+384: Ֆր. 4.50

ԼԸ. Տէր-Պօղոսեան Գր., Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: Էջ Ը+110: Ֆր. 1.50

ԼԹ. Վէբէր Ս., Արարատը Ս. Գրոց մէջ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1901: Էւ Ծ+77: Փր. 1.—

Խ. Սանտալճեան Յովսէփ Վ., Ասորեստանեայ եւ Պարսիկ սեպագիր արձանագրութիւնք կամ որոնք Նաիրի-Ուրարտու աշխարհին պատմութեան կը վերաբերին: 1901: Էջ 262: Ֆր. 4.50

ԽԱ. Խաչաթեանց Բագրատ, Հայ ժողովրդական դիւցազնական վէպը: 1903: Էջ Ը+72 Փր. 1.—

ԽԲ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Արդի լեզուագիտութիւնը: Հտր Ա.: 1903: Էջ Ը+204: Ֆր. 3.—

ԽԳ. Մարկուարտ Յ., Հայ Եղնաշիք: Թրգմ. Հ. Թ. Աէտիկեան: 1903: Էջ 39: Փր. —.75

ԽԴ. Գէլցէր Հ., Սկզբնաւորութիւնք Բիւզանդեան բանակաթեմերու դրութեան (1 քարտէզով): Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1903: Էջ Է+83: Փր. 2.—

ԽԵ. Կիւլէսէրեան Բ. Վ., Ծովք. Ծովք-Տլուք եւ Հռոմ-Կլայ, պատմական եւ տեղագրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ Ը+117: Փր. 1.50

ԽԶ. Կիւլէսէրեան Բ. Վ., Կոլոտ Յովհաննէս Պատրիարք. պատմագրական եւ քննասիրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ ԺԴ+227: Փր. 3.50

ԽԷ. Պեդերսըն Հ., Նպաստ մը հայ. լեզուի պատմութեան: Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1904: Էջ Ը+87: Փր. 1.25

ԽԸ. Տէր-Մկրտչեան Գ. եւ Աճառեան Հ. Յ., Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ նորագիւտ ձեռագրին: 1904: Էջ Է+105: Փր. 1.50

ԽԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Գ. Հտր. 1825-1904: Էջ Ժ+658: Փր. 7.—

Ծ. Շտրէք Մ., Հայաստան, Քրդստան եւ արեւմտեան Պարսկաստան բաբելական-ասորեստանեայ սեպագրերու համաձայն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1904: Էջ Է+222: Փր. 3.—

ԾԱ. Խալաթեանց Գր., Հայ Արշակունիք ըստ Մովս. Խորենացւոյ, կամ նոր ուսումնասիրութիւններ Մովս. Խորենացւոյ մասին: Թրգմ. Արսէն, Ս. Սիմոնեանց: 1906: Էջ Ը+124: Փր. 1.50

ԾԲ. Պեդերսըն Հ., Հայերէն եւ դրացի լեզուները: Թրգմ. Հ. Թ. Աէտիկեան: 1907: Էջ ԺԱ+257: Փր. 5.—

ԾԳ. Հիւբշման Հ., Հին Հայոց տեղւոյ անունները: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1907: Էջ ԺԶ+443: Փր. 7.—

ԾԴ. Պեդերսըն Հ., Հին հայերէնի ցուցական դերանունները: Թրգմ. Հ. Յ. Տաշեան: 1907: Էջ Է+90 Փր. 2.—

ԾԵ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Կենսագրութիւն Սարգիս Արքեպիսկոպոսի Սարաֆեան եւ ժամանակին հայ կաթողիկեայք: 1908: Էջ ԺԴ+433:
Ֆր. 5.--

ԾԶ. Աճառեան Հ., Հայերէն նոր բառեր Նորագիւտ Մնացորդաց գրոց մէջ: 1908: Էջ 38: Ֆր. —.60

ԾԷ. Կիւլէսէրեան Բ. Ծ. Վ., Եղիշէ, քննական ուսումնասիրութիւն: 1909: Էջ ԻԸ+458: Ֆր. 7.—

ԾԸ¹. Ակինեան Հ. Ն., Տիմոթէոս Կուզ հայ մատենագրութեան մէջ: Էջ 1—60:

ԾԸ². Աճառեան Հր., Հայերէն նոր բառեր Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան մէջ: 1909: Էջ 61—106:
Ֆր. 1.50

ԾԹ. Ակինեան Հ. Ն., Զաքարիա Եպ. Գնունեաց եւ իւր տաղերը: 1909: Էջ ԺԲ+87: Ֆր. 1.—

Կ. Ակինեան Հ. Ն., Կիւրիոն Կաթողիկոս Վրաց: 1910: Էջ ԻԷ+315: Ֆր. 5.—

ԿԱ. Մէնէվիշեան Հ. Գ. Ծ. Վ., Հայերէն լեզուի ուղղագրութեան խնդիրը: 1910: Էջ 73: Ֆր. 1.—

ԿԲ. Գիւտէրբոք Կ., Բիւզանդիոն եւ Պարսկաստան եւ անոնց դիւանագիտական եւ ազգային-իրաւական յարաբերութիւնները Յուստինիանու ժամանակ: Թրգմ. Հ. Հ. Համբարեան: 1911: Էջ Ը+162:
Ֆր. 2.50

ԿԳ. Սամուէլեան Խ., Մխիթար Գօշի Դատաստանագիրքն ու հին Հայոց քաղաքացիական իրաւունքը: 1911: Էջ ԺԲ+344: Ֆր. 5.—

ԿԴ. Առաքելեան Հ., Պարսկաստանի Հայերը, նրանց անցեալը, ներկան եւ ապագան: Ա. 1911: Էջ Ը+97:
Ֆր. 1.50

ԿԵ¹. Յովնանեան Հ. Ղ. Վ., Միջնադարեան ազգային տաղաչափութիւն ռամկախառն. Էջ 1-48:

ԿԵ². Ակինեան Հ. Ն., Յովնաթան Նաղաշ եւ Նաղաշ Յովնաթանեանք եւ իրենց բանաստեղծական եւ նկարչական աշխատութիւնք: 1911. Էջ 49-117:
Ֆր. 1.50

ԿԶ. Մ ե ն և վ ի շ ե ա ն Հ. Գ. ծ. Վ., Գրիգոր Մագիստրոսի «Ժամանակագրականին» ամբողջական լուծումը: 1912: Էջ ԺԱ+162: Փր. 150

ԿԷ. Գ ա բ ր ի է լ ե ա ն Դկտ. Մ. Ս., Ակնայ Գաւառաբարբառը եւ Արդի Հայերէն լեզուն: 1912: Էջ Է+416: Փր. 6.—

ԿԸ. Մ ա ր կ ո ւ ա ր տ Պրոֆ. Դկտ. Յ., Պատմութիւն Հայերէն նշանագրերու եւ վարուց Ս. Մաշթոցի: Թրգմ. Հ. Ա. Վարդանեան: 1913: Էջ Է+59: Փր. 150

---

